# ԵՐԱԺԻՇՏԸ

ՌՈՒԲԵՆ ՄԱՐՈՒԽՅԱՆ

Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Հին քաղաքի մի մարդաշատ փողոցի անկյունում, նպարեղենի խանութի մոտ, կանգնած էր մի ծեր երաժիշտ: Նա երկար, օձախռիվ մորուք ուներ, որն իջնում էր մինչև կուրծքը: Կապույտ, խոնավ աչքերը լի էին վշտով: Թևի տակ պահում էր մաշված, գույնը տեղ-տեղ թափված ջութակը: Ոչ ոքի չէր նայում:

Երբեմն-երբեմն բարձրացնում էր ջութակն ու աղեղը սահեցնում լարերի վրայով: Հնչում էր քայլերգի առնական մեղեդին, ու թվում էր, թե ազատության համար մարտնչող զինվորների շարասյուներն են անցնում կանաչ դաշտի միջով: Սակայն ոչ ոք նրա երգը չէր լսում:

— Կորի՛ր այստեղից, ի՜նչ ես ագռավի նման կռկռացնում: Շո՛ւտ, շո՛ւտ, կորի՛ր,— ծերունու վրա բղավեց մի գեր, ինքնագոհ ոստիկան ու երկարաճիտ կոշիկով խփեց նրա ոսկրոտ սրունքին:

— Ես ոչ ոքի չեմ խանգարում, պարզապես նվագում եմ,— արհամարհանքով ասաց ծերունին: Ոստիկանը չարությամբ բռնեց նրա ձեռքն ու հրեց մի կողմ:

— Դուք ի՞նչ եք հասկանում երաժշտությունից: Թեկուզ ամբողջ մի զորագունդ գա ինձ վրա, մեկ է, ես կնվագեմ: Ես մուրացկան չեմ: Ես երաժիշտ եմ:

Այդ միջոցին կանգնեց մի շատ շքեղ կառք: Կառքից ցած իջավ եվրոպական տարազով, ոչ այնքան բարձրահասակ մի մարդ:

— Ապա բա՛ց թողեք ծերունուն, հիմա՜ր,— բղավեց նա:

Ոստիկանը ձգվեց տեղում ու ակնապիշ նայեց անծանոթ մարդու դեմքին:

— Այս ծերունին հրաշալի մարդ է: Տեսեք, ի՜նչ փառահեղ մորուք ունի, միայն այս մորուքի ու հասակի համար պետք է խոնարհվել նրա առջև: Ապա խոնարհվեցե՛ք:

— Ճի՛շտ այդպես, ձե՛րդ ազնվություն: Ես նրա մորուքը չէի տեսել:

— Մաէ՛ստրո, խնդրում եմ նստել կառքը: Ես շատ ուրախ կլինեմ, եթե դուք համաձայնվեք ինձ հետ գալ,— ծերունուն դիմեց անծանոթ երիտասարդը:

— Կառք նստեմ... ինչո՞ւ...— տարակուսած ասաց ծերունին:

— Խնդրում եմ, մաէ՛ստրո, մի՛ մերժեք: Ես ձեզ հետ կարևոր գործ ունեմ,— թախանձեց երիտասարդը ու հրամայական տոնով դիմեց ոստիկանին,— օգնեցե՛ք ծերունուն, նստեցրե՛ք կառքը:

— Պարո՛ն Ադամյան, մեզ սպասում է պարոն Մանթաշյանը: Միլիոնատերը կզայրանա, եթե ժամադրությունը խախտենք,— կառքի խորքից Ադամյանին դիմեց բարետես մի մարդ:

— Ես նրա մոտ չեմ ուզում գնալ: Հայտնե՛ք միլիոնատիրոջը, որ ես այսօր զբաղված եմ ավելի կարևոր գործով,— պատասխանեց Ադամյանը:

— Ներեցե՛ք, պարո՛ն, ինչո՞վ եմ արժանացել ձեր ուշադրությանը, և հիմա ո՞ւր եք տանում ինձ,— հարցրեց ծերունին անքթիթ նայելով Ադամյանի աչքերին:

— Մաէ՛ստրո, սիրելի՛ս, երեկ ես լսեցի ձեր նվագը, այն ինձ շատ դուր եկավ: Ես ամբողջ օրը փնտրում էի ձեզ և ահա գտա: Դուք ինձ պետք եք:

— Ես սիրում եմ ազատ լինել, բոլորովին ազատ և...

— Ես ձեր ազատությունը չեմ բանտելու, մաէ՛ստրո, եկե՛ք ինձ հետ, խնդրում եմ,— թախանձեց Ադամյանը:

Ծերունին կյանքում շատ մարդկանց էր հանդիպել, բայց դեռ չէր տեսել այսքան առինքնող ու բարեհամբույր մարդու:

Կառքը կանգ առավ երկհարկանի մի տան առջև:

— Հասանք,— ասաց Ադամյանն ու կառքից ցած իջավ: Ծերունին հետևեց նրան:

Տունը, որտեղ ապրում էր Ադամյանը, անշուք ու պարզ մի սենյակ էր: Հատակին ծաղկանկար գորգ էր փռված, պատերին նկարներ կային, իսկ կենտրոնում դրված էին մոլբերտն ու նկարչական պարագաներ:

— Կարող եք այստեղ ձեզ ազատ և ապահով զգալ,— ասաց Ադամյանը:

— Բայց ո՞վ եք դուք, նկարի՞չ եք,— հարցրեց ծերունին:

— Սիրում եմ նաև նկարել, ցավոք նկարիչ չեմ,— խոր ափսոսանքով ու տխրությամբ շշնջաց Ադամյանը:— Ապրում եմ այս աշխարհում և մարդկանց համար ինչ-որ բան եմ անում, սիրելի՛ մաէստրո, ու չգիտեմ դա լա՞վ է, թե՞ վատ:

— Ա՜,— ծոր տվեց ծեր երաժիշտը, իբր ինչ-որ բան հասկացավ ու լռեց:

Ադամյանը վառեց կրակարանը, ներս կանչեց ծառային, ինչ-որ բան պատվիրեց նրան: Ծառան ոտքից-գլուխ չափեց ծերունուն ու տանից դուրս եկավ:

Կրակարանում կրակը բորբոքվեց: Հաճելի ջերմությամբ լցվեց սենյակը: Ծերունին գլուխն առավ ափերի մեջ, պապանձված նստեց կրակի մոտ:

— Հարազատներ ունե՞ք,— հարցրեց Ադամյանը:

— Ունեի... հիմա ոչ ոք չունեմ:

— Որտե՞ղ է ձեր տունը:

— Այնտեղ, ուր ապրում էր Մեծն Գարիբալդին: Ես նրա երաժշտախմբի տղաներից եմ... ի՜նչ օրեր էին: Երգելով քայլում էին ազատության բանակի

մարտիկներն ու, եթե ընկնում էին, նրանց շուրթերից շարունակում էր հնչել երգը: Հիմա ոչինչ չկա… կորցրել եմ կնոջս, աղջկաս, հայրենիք չեմ կարող գնալ… Թափառում եմ, աշխարհով մեկ հնչեցնելով մեր քայլերգը,— ծերունին հառաչելով լռեց:

— Ա՜խ, երանի կարողանայի ձեզ օգնել, մաեստրո: Ես պատրաստ եմ, ասացե՛ք, ի՞նչ անեմ:

— Դուք ինձ չեք կարող օգնել… շնորհակալ եմ:

Ներս եկավ ծառան ու սեղանի վրա դրեց ուտեստներով լիքը մի սկուտեղ:

— Մաե՛ստրո, խնդրեմ, համեցե՛ք սեղանի մոտ,— ասաց Ադամյանը:

Ծերունին լուռ մոտեցավ սեղանին ու սկսեց ճաշակել: Ով գիտե, քանի՜-քանի օրեր էր նա կիսաքաղց անցկացրել: Ադամյանը մոտեցավ մոլբերտին, հարմար դիրքով տեղավորվեց նրա մոտ և ուշադիր սկսեց զննել ծերունու յուրաքանչյուր շարժումը:

«Օ՜, ի՜նչ վշտոտ հայացք ունի այս մարդը, ի՜նչ գեղեցիկ ու խոհուն ճակատ: Ահա այդպիսին պետք է լինի իմ Կորրադոն: Այդպիսի արտաքին պետք է ունենա այն մարդը, որին ես պատկերելու եմ բեմի վրա: Նա հպարտ հոգի ունի: Բռնությունից զզվանքով ու երես թեքած մարդու զայրույթով է լցված սիրտը…»

Ահա իր ապագա հերոսի նախատիպը: Ի՜նչ լավ է, որ գտավ նրան…

«… Կորրադո, ո՛չ, ես այդ կերպարը այնպես չեմ բացահայտի, ինչպես գրել է իտալացի դրամատուրգը՝ Ջիոկոմետտին իր «Ոճրագործի ընտանիք»-ում: Մելոդրամա խաղալը հեշտ է: Ես պետք է պաշտպանեմ բոլոր ըմբոստներին, որոնք ծառանում են բռնության ու չարիքի դեմ, տառապում աքսորավայրի մութ զնդաններում: Ես պետք է փառաբանեմ մարդու ազատությունը»:

— Շնորհակալությո՛ւն, սինյո՛ր,— ասաց ծերունին ու սեղանի մոտից վեր կացավ:

— Դուք ուզում եք գնա՞լ,— նրան դիմեց Ադամյանը:

— Եթե թույլ տաք:

— Ես ուզում եմ ձեզ նկարել, եթե համաձայնվեք, ես շատ ուրախ կլինեմ:

— Ինչի՞ համար, ո՞ւմն է պետք իմ դեմքը,— մրմնջաց ծերունին:

— Ինձ, հասարակությանը, մարդկանց, որոնք դեռ չգիտեն տառապանքի արժեքն ու հաղթանակի հավատով ապրելու գաղտնիքը: Խնդրում եմ մի՛ մերժեք:

— Լավ, համաձայն եմ, կարող եք հենց հիմա սկսել,— ասաց ծերունին ու նստեց Ադամյանի դեմդիմաց:

Պետրոս Ադամյանը համակվեց անբացատրելի մի հուզմունքով ու ներքին դողով: Աչքերը կրակվում էին, ու թվում էր, թե ներկապնակի ներկերը հըր-



դեհվում են, և վրձնի ծայրով նա այդ ներկերի քուրայի միջից ընտրում էր այն գույները, որոնք կարող էին ստեղծել ծեր երաժիշտի առնական ու ըմբոստ կերպարը։

Նա ինքնամոռաց աշխատեց այնքան, մինչև սենյակում մութը թանձրացավ։

— Այսօր բավական է, հոգնեցրի ձեզ,— ասաց Ադամյանն ու մոլբերտից հեռացավ։ Կտավի վրա արդեն ուրվագծվում էին ապագա ստեղծագործության հիմնական գծերը։ Ծերունին ո՛չ մոտեցավ կտավին և ո՛չ էլ ուզեց իմանալ, թե ինչ է ստացվել։

— Գնամ։ Ես մի ընկեր ունեմ, կսպասի ինձ։

— Սպասեցե՛ք,— ասաց Ադամյանն ու սենյակից դուրս եկավ։

Քիչ հետո ծառայի հետ վերադարձավ նա ու ծերունուն մեկնեց մի կապոց։

— Ի՞նչ է սա,— հարցրեց ծերունին։

— Զգեստներ։ Ցրտերն սկսվել են, իսկ դուք շատ թեթև եք հագնված, կմրսեք։

— Ի՞նչ է, դա մորուքիս վա՞րձն է։

— Ո՛չ, ի՞նչ եք ասում։ Ես չեմ ուզում, որ դուք հիվանդանաք։ Վերցրե՛ք, խնդրում եմ։

Ծերունին Ադամյանի ձեռքից վերցրեց կապոցն ու առանց բառ ասելու արագ-արագ հեռացավ։ Ծառան ուզեց գնալ նրա ետևից, ճանապարհ դնելու համար, սակայն Ադամյանը չթողեց։

Անցան օրեր, այլևս ոչ մի տեղ և ոչ մի օր Ադամյանը չհանդիպեց ծեր երաժիշտին։ Մոլբերտի վրա, երկար օրեր անավարտ մնաց նրա դիմանկարը։

Ադամյանը թատրոնում անվերջ փորձում էր ու աշխատում գտնել մարդկային հոգու մեջ թաքնված ամենանուրբ ու ամենախոր զգացմունքների բեմական արտահայտչամիջոցներ։

Եվ կատարվեց հրաշքը։ Այդ օրը թատրոնում գտնվող հանդիսականները դարձան այն երջանիկ մարդիկ, որոնք վայելեցին արվեստի գերագույն հաճույքը։ Նրանք տեսան Ադամյանի Կորրադոն ու որոտընդոստ ծափերով ու ծաղիկներով վարձատրեցին հանճարեղ արտիստին։ Ալեքսանդր Շիրվանզադեն շտապեց հարդասենյակ, մոտեցավ Ադամյանին ու ջերմագին գրկեց նրան.

— Շնորհակալությո՛ւն, Պետրո՛ս։ Շնորհակալությո՛ւն մեծ արվեստի համար։

Ադամյանը խոնարհեց գլուխը ու, հոգնած, ընկղմվեց բազկաթոռի մեջ։ Հարդասենյակի դուռը թակեցին։

— Եթե շնորհավորելու են գալիս, մի՛ ընդունեք։ Ես չափազանց հոգնած եմ,— ասաց Ադամյանը։

— Թափառաշրջիկ մի երաժիշտ է, ասում է, որ դուք ճանաչում եք նրան և խնդրում է, որ ընդունեք։

Ադամյանի աչքերը վառվեցին։

— Նե՛րս հրավիրեք,— ասաց նա ու տեղից վեր ելավ։

Դռների մեջ երևաց օձախռիվ մորուքով ու առնական դեմքով ծերունի երաժիշտը։ Նրա աչքերը արցունքոտ էին։ Ձեռքերը հուզմունքից դողում էին։

— Մաե՛ստրո, համեցեք նստե՛ք,— շշնջաց Ադամյանը։

— Ես տեսա ձեզ բեմի վրա… Ահա թե ո՛վ եք դուք։ Դուք աշխարհի բոլոր տառապյալների ու ազատասերների ոգին եք։

Նա ծունկի իջավ Ադամյանի առջև ու նրան պարզեց իր ջութակը։

— Ես ոչինչ չունեմ, բացի այս ջութակից։ Վերցրե՛ք այն, որպես երախտագիտության արտահայտություն… Վերցրե՛ք, վերցրե՛ք և հիշե՛ք…— Նա այլևս ոչ մի բառ չկարողացավ արտասանել։

Տեղից վեր ելավ ու արագ հեռացավ։

Ադամյանի ձեռքերի մեջ մնաց ծերունու հին ու մաշված ջութակը և կարծես հեռու-հեռվից սկսեցին լսվել քայլերգի խրոխտ հնչյունները։ Ադամյանը կրծքին սեղմեց ծեր երաժշտի ջութակը և մրմնջաց.

— Սա ամենամեծ նվերն է, որ երբևիցե ես ստացել եմ։






# ՊԻՏԻ ԳԱՆ

ՀՈՎՀԱՆՆԵՍ ԳՐԻԳՈՐՅԱՆ



Դեռ մատներին՝ թանաք,
Եվ կավճի փոշի՝
Մազերի մեջ՝ խռիվ,
Գնո՞ւմ էին տղերքը բանակ,
Իսկ այնտեղից՝ կռիվ:
Գրպանների մեջ՝ մատիտի կտոր,
Աշակերտական մի երկու տետրակ,
Որ նամակ գրեն ամեն, ամեն օր,
Թե՝ մայրիկ, շուտով կվերադառնանք:
Պատերազմական ցուրտ կայարաններ
Ու էշելոններ զինվորներով լի,
Լացող մայրիկներ, լացող քույրիկներ
Եվ բաժանումներ անմոռանալի:
Ու նվագախմբի զիլ նվագի տակ,
Կիսատ թողնելով ամեն-ամեն ինչ՝
Գնում էին տղերքը բանակ,
Գնում էին պաշտպանեն
հայրենին:
Ու վերջին, մի վերջին անգամ
Նայելով հարազատ դեմքերին,
Ժպտում էին՝ մի՛ տխրեք, կգա՜նք,
Հաղթական տուն կգանք
կրկին...
...Ու թեև քանի տարիներ
Անցել են այդ դաժան օրերից,
Անցյալը սալի է դարձել,
Ցավը՝ հուշ, հասել քեզ ու ինձ,
Մայրերը դուռը չե՜ն փակում,
Քույրերը սև շորեր չե՜ն հագնում.
Գիտեն, համոզված են, անպայման
Վաղը չէ, ուրեմն մյուս օրը
Նրանք միասին, բոլորը
Պիտի՛ գան,
Պիտի՛ գան,
Պիտի՛ գան...



# ԹՌԻՉՔ

ՄԻՔ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ



— Դու կարող ես,
Եվ մի՛ նայիր այդպես վհատ.
Հենց այդ է վատ.
Թռի՛ր թեթև թռչունի պես,
Բարձրությունը կանչում է քեզ:—
Լսեց տղան, պոկվեց տեղից,
Թռավ, ինչպես նետն աղեղից,
Դեմը թեև
Բարձրությունը թոկ է միայն,
Հեշտ չէ, սակայն, հաղթահարել,
Եվ հավատը
Թև է տալիս կարծես նրան.
Ուրիշ ինչպե՞ս բարձունքն առնել:
Հասավ տղան,
Էլ չերևաց աչքին ոչինչ.
Միայն թռիչք,
Եվ, տե՛ս, օդում,
Ասես լողում,
Սահում է նա թեթև՜-թեթև՜,
Ցածում մնաց բարձունքն արդեն:
— Նորի՜ց, նորի՜ց,—
Ընկերները ձայն են տալիս,
Ոգևորում,
Տղան կրկին թափով գալիս
Եվ նորից է բարձունքն առնում...
Թնդաց ուռան, զվարթ ուռան:
— Որ ասացի՝ դու կարող ես,—
Ուսուցիչը ժպտաց նրան...



# ԶԻՆՎՈՐԻ

ԳԱԳԻԿ ԲԱԴԱԼՅԱՆ

Ամբողջ գիշեր անձրև եկավ: Շատ ենք թրջվել: Բայց միևնույն է, տասը րոպեից սկսվելու էր հարձակումը: Այդպիսին էր Կալինինի ճակատի հրամանատար գեներալ Կոնևի հրամանը: Սպասումի անհանգիստ րոպեներ... Հանկարծ կարծես երկինքը միանգամից փուլ եկավ: Որոտացին հարյուրավոր ու հազարավոր թնդանոթներ, և բարձր թմբի վրա նստած Դեշյովկա գյուղը, ուր խրամատավորվել էին գերմանացիները, մշուշվեց փոշու և ծխի քուլաների մեջ: Թողած ամեն ինչ, գերմանացի զավթիչները հապճեպ նահանջեցին:

Տասնինը կիլոմետր անցնելուց հետո, մենք կանգ առանք: Հակառակորդն սկսեց հրետանային կրակով խանգարել մեր առաջընթացը: Չնայած ահեղ կրակին, հետախույզներս շարունակում էինք առաջ շարժվել: Հենց այդ ժամանակ էլ սերժանտ Բիստրովը վիրավորվեց: Շտապ վիրակապեցինք Բիստրովին և թողնելով նրան մի ոչ մեծ գետի ափին, շարժվեցինք առաջ: Շատ չանցած, ստացանք դադարի հրաման:

— Տղանե՛ր, հարկավոր է Բիստրովին շտապ հոսպիտալ հասցնել,— առաջարկեցի ես:

Վազեցինք դեպի գետի ափը, սակայն նա այնտեղ չէ: Ձայն ենք տալիս, կանչում, պատասխան չկա: Եվ հանկարծ հեռվից մանկական մի ձայն ասում է. «Ձեր զինվորը այստե՞ղ է, եկե՛ք...» Ո՜վ զարմանք, պատերազմի դաշտ, թեժ մարտեր, և՝ երեխայի ձայն: Ականջներիս չեմ հավատում: Բոլորս վազում ենք երեխայի ձայնի ուղղությամբ: Հազիվ 9—10 տարեկան գլխաբաց մի տղա արագ մտնում է հոլիկանման մի փոքրիկ փոսի մեջ:

Սողալով, այդ փոսը մտանք նաև մենք:

— Տեղափոխվեցի մի կերպ, ընկե՛ր լեյտենանտ,— այս անգամ լսում եմ Բիստրովի թույլ ձայնը,— Օլեգը ինձ օգնեց:

— Դու ո՞վ ես, փոքրի՛կ, ի՞նչ ես անում այստեղ,— հարցնում եմ տղային:

— Մայրիկիս կորցրի: Երեկ գերմանացիները բոլորին գյուղից դուրս քշեցին: Հետո մայրիկը Մարինկային գրկած փախավ, ես էլ նրա ետևից վազում էի...

— Հետո՞:

— Հետո նորից ռումբ պայթեց, ես թռա փոսի մեջ... Երբ դուրս եկա, մայրիկը չկար, ու ես այստեղ...

— Տղան սոված կլինի,— ասաց Իվանովը:

Ուտելիք տվինք տղային: Իրոք շատ էր սոված, ուտում էր ագահաբար, մեկ երշիկն էր տանում բերանը, մեկ՝ խոզի ճարպը, մեկ՝ հացը...

— Մենք պետք է շտաբը գտնենք, տղանե՛ր, պատրաստվեցե՛ք շարժվելու,— ասացի ես:

— Իվանո՛վ, առայժմ դու մնա՛ այստեղ, տղան էլ թող քեզ մոտ մնա: Շուտով սանիտարներ կուղարկենք ձեր ետևից:

Արդեն բոլորովին մութ էր: Անձրևը շարունակում էր մաղել: Հուլիս ամիսն էր, բայց օդը սառն էր: Թաց հագուստներով շարժվելը և՛ տհաճ էր, և՛ դժվար:

Շտաբը գտանք կեսգիշերին: Հրամանատարը մեզ էր սպասում:

Զեկուցեցինք թշնամու դիրքի, տեղանքի մասին:

— Գնացեք ցա՛ծ, այնտեղ քանդված ջրաղաց կա, ներսում կրա՜կ արեք և չորացե՛ք: Սա՛յլ ուղարկեք հետախույզ Բիստրովին բերելու,— կարգադրեց գնդի կոմիսարը՝ Իվան Ֆեոդորովիչ Կրասիլնիկովը:

* * *

Լույսը նոր էր բացվել, երբ հոգնած կոպերս բացեցի ու նայեցի շուրջս: Տղաները կիսաքաղց շենքի այս ու այն անկյունում կծկվել քնել էին: Անձրևը



# ՀԻՇՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻՑ

*Նկ. ԳՐԻԳՈՐ ԹՈՐՈՍՅԱՆԻ*

դադարել էր, հորիզոնում ամպերը լուսավորվել էին, արև էր լինելու... Ուրախացա. զգեստներս կչորացնեինք: Դուրս եկա ջրաղացից: Կանաչ դաշտեր էին ու հատուկենտ ծառեր: Ջրաղացի տակից դուրս եկող ոչ մեծ առվակը քչքչալով վազում էր ցած: Բարձրացա քիչ վերև: Մի չքնաղ տեսարան բացվեց իմ առջև: Գեղեցիկ լճակ էր տարածված ջրաղացից վերև: Լճակի մի կողմում գյուղն է եղել՝ շրջապատված ծառերով, իսկ հակառակ կողմում՝ մարգագետին էր: Այժմ տների փոխարեն մոխրակույտեր էին միայն: Ամեն ինչ ավերված, այրված էր:

Մի տեսակ թախիծ պատեց ինձ, որքա՜ն կուզեի շուտ վերջանար պատերազմը, բոլորը վերադառնային տուն, Դեշչյովկա գյուղն էլ նորից լցվեր կյանքով... Օլեգն էլ իր մայրիկին ու քույրիկին գտներ:

— Ընկե՛ր լեյտենանտ, բերեցի:

Շուռ եկա: Եգորովն էր:

Իջանք ցած: Ջրաղացի առջև կանգնած էր երկձիանի սայլակը:

Բիստրովը պառկած էր նրա մեջ, իսկ Օլեգը նստած էր սայլապանի կողքին:

— Բարի լո՛ւյս, Օլե՛գ, դո՞ւ էլ եկար:

Մոտեցա, նիհար, փոքրիկ ձեռքը առա ափիս մեջ... կարոտ զգացի: Այնտեղ՝ հեռու Կովկասում ես էլ մի փոքրիկ տղա եմ թողել, սիրում էի նրա թաթիկը առնել ձեռքերիս մեջ ու երկար, երկա՜ր շոյել, համբուրել:

— Բիստրովին մի՛ իջեցրեք, ուղիղ տարեք դաշտային հոսպիտալ, իսկ տղան կմնա մեզ մոտ:

Օլեգը սայլից հնազանդ իջավ:

* * *

Իվանովն Օլեգի համար շրթնհարմոն գտավ, այն էլ՝ ոչ թե մեկը, այլ՝ երկուսը: Մեկը փոքր էր, իսկ մյուսը՝ մեծ ու բավականին գեղեցիկ: Օլեգի ուրախությանը սահման չկար. մերթ վազում էր, մտնում ջրաղաց, տղաներին ցույց տալիս, մերթ՝ դուրս գալիս ու վազում դեպի Իվանովը: Տղաները սկսեցին նրան «Գնդի որդի» անվանել: Մի քանի ժամում Օլեգի հետ մտերմացան ու նրան սիրեցին բոլոր հետախույզները: Երեկոյան նախապատրաստվեցինք շուտ քնելու: Գիշերը գնալու էինք հետախուզության: Հարկավոր էր ճշտել թշնամու ուժերի դասավորությունն ու մոտավոր քանակը: Հրամայված էր «լեզու բերել»:

Քնելուց առաջ Իվանովի հետ դուրս եկանք ըզբոսնելու:

— Քեռի՛, դու այստե՞ղ ես,— ջրաղացից դուրս գալով, դեպի մեզ վազեց Օլեգը:

— Քեռի՛ Վանյա, այս շրթնհարմոնները գերմանակա՞ն են:

— Գերմանական, նրանք թողել էին խրամատների մեջ ու փախել:

— Կտանեմ մեկը մորաքրոջս տղային կտամ:

— Իսկ որտե՞ղ են նրանք ապրում:

— Տորժոկ քաղաքում: Նրանց տունն էլ գիտեմ:

— Այդ լավ եղավ, ընկե՛ր լեյտենանտ, վաղը չէ մյուս օրը սանիտարական մեքենաները վիրավորներ են տանելու Տորժոկ, տղային էլ կտանեն...

Վաղ առավոտ էր, երբ կապավորն ինձ մոտ եկավ.

— Սանիտարական մեքենաներն եկել են:

Լվացվեցի և մոտեցա տղաներին: Բոլորն էլ քնած էին: Քնած էին նաև Իվանովն ու Օլեգը: Վերջինս կպել էր Իվանովին, որը ձեռքով գրկել էր տղայի մեջքը: Այնքան մտերմություն, ջերմություն, հարազատություն կար երկուսի միջև, ասես կարոտած հայրն էր գրկել որդուն:

Իվանովին արթնացրի:

Իվանովը վեր կացավ ու շտապեց պահեստ:

Քիչ հետո նա վերադարձավ մի մեծ պարկ մթերքով.

— Օճառ էլ եմ բերել, թող Օլեգը տանի, պետք կգա:

Լսելով մեկնելու մասին, Օլեգը տխրեց: Բոլորս գնացինք նրան և Բիստրովին ճանապարհելու:

— Դուք գնում եք Տորժոկ քաղաքը, Օլե՛գ, այս քեռին՝ Գավրիկը քեզ կտանի քո մորաքրոջ տուն: Հասկացա՞ր,— ասաց Իվանովը և գրկելով Օլեգին, սեղմեց կրծքին ու պինդ-պինդ համբուրեց: Եվ հանկարծ հայտնագործություն արածի նման ձեռքը տարավ գրպանը, մի փոքրիկ, սիրուն գրչահատ հանելով՝ մեկնեց տղային.

— Վերցրո՛ւ, այս էլ քեզ հիշատակ իմ կողմից, չմոռանա՛ս մեզ, տղա՛ս:

Իվանովի աչքերը թրջվեցին:

— Քեռի՛, նամա՛կ կգրես, մորաքրոջս անունը Դուրանդինա Գալինա է,— լացակումած բղավեց Օլեգը:

Մեքենան ընթացքն արագացրեց: Քամին թափահարում էր Օլեգի խարտյաշ մազերը: Մեքենան աստիճանաբար հեռացավ, փոքրացավ մեր աչքին ու ծածկվեց բլուրի հետևում...

Մենք վերադարձանք քանդված ջրաղացը: Իվանովը տխուր էր ու մտախոհ: Փոքրիկ տղան գերել էր նրա սիրտը, և նա ապրում էր բաժանման ցավը... Մենք էլ պակաս տխուր չէինք:



# ՊԱՊԻ ԾՆՆԴԱՎԱՅՐԸ

*ՀՈՎՀԱՆՆԵՍ ՄԵԼՔՈՆՅԱՆ*

*Վրեժն ու պապ Արամեն ճանապարհի պատրաստություն էին տեսել՝ հին սնդուկից հանել էին միականի հեռադիտակը, ապակեթղթով մաքրել ժանգոտած մասերը, սրբել ապակիները, ուսս պարկերի մեջ դասավորել էին ուտելիքը և այլ անհրաժեշտ բաներ, յուղել էին դահուկները... Մինչև իրիկուն ամեն ինչ պատրաստ էր, մնում էր առավոտյան վեր կենալ և ճամփա ընկնել: Երբ պառկում էին քնելու, Վրեժը տնեցիներից թաքուն, մութ միջանցքով զգուշորեն գնաց պապի սենյակը և, շրթունքները հպելով նրա ականջին, փսփսաց.*

*— Պա՛պ, իրար հետ քնենք, որ առավոտյան միասին վեր կենանք...*

*— Հա՛, արի ծո՛ցս,— ասաց Արամե պապը:*

*Պապ և թոռ միասին քնեցին և առավոտյան վաղ, երբ բոլոր տնեցիները քնած էին, վեր կացան անկողնուց, լվացվեցին, նախաճաշեցին ու ճանապարհ ընկան: Գիշերը թեև բուք էր եղել, առավոտյան ձյունամրրիկը, ճիշտ է, դադարել էր, բայց սաստիկ ցուրտ էր: Արամե պապը՝ առջևից, Վրեժը՝ ետևից, դահուկները ուսած, քայլում էին արվարձանի սառցակալ ճանապարհով: Քիչ հետո Վրեժը ետևից ձայն տվեց.*



*— Պա՛պ, հրացանիդ փողն սպիտակեց:*

*— Կապիտակի, բա՛... Մարդու տաք շունչը պաղ երկաթին առնելով՝ եղյամ է դառնում: Իմ շնչից է...*

*— Դահուկները ե՞րբ ենք հագնելու...*

*— Դուրս գանք ճանապարհից, հետո... Սառույց է, դահուկներով հարմար չէ,— ասաց պապը:*

*Արվարձանի վերջին տունը ահա մնաց ետևում: Նրանք դուրս եկան արձակ դաշտ:*

*— Այստեղից կգնանք դահուկներով,— ասաց պապը, ուսից իջեցնելով դահուկները:*

*— Պա՛պ, ինչքա՞ն ժամանակից կհասնենք,— հարցրեց Վրեժը:*

*— Դիմացի բլուրները տեսնո՞ւմ ես, մինչև այնտեղ զառիվեր է, պիտի անընդհատ բարձրանանք, դժվար է: Իսկ հետո կհեշտանա, ձյունոտ լանջերով պիտի ցած սահենք, մինչև գետահովիտ... Այնտեղից պարզ երևում է քո պապերի ծննդավայր Բերդիկ գյուղը: Գետի ափին մի հարմար տեղ կընտրենք, ու դու վրձինով կնկարես, ես կնայեմ, կնայեմ, հին օրերս կհիշեմ...*

*— Մեր տունը կերևա, չէ՞, պա՛պ:*

*— Կերևա,— ասաց պապը:*



# ՃԱՐՏԱՐ

*ԽԱՉԻԿ ՀՐԱՉՅԱՆ*



**Մի նավաստի,**
**Մակույկ նստած,**
**Նավեց ծովի հեռուն:**
**Մակույկն ամուր էր,**
**Բարձրակող,**
**Բայց ալիքներն երկինք հասնող**
**Փրփրում էին, եռում:**

**Ով էլ լինէր նավաստու տեղ,**



# ՆԱՎԱՍՏԻՆ

*(Ջոն Բաննետից)*

Չէր հեռանա ափից.
Անխր հետը շերեփ չուներ,
Որ ջուրը դուրս թափի:

Հնարամիտ մեր նավաստին
Իրեն չկորցրեց.
Նավակի տակ բացեց մի անցք
Ու ջուրը դուրս թողեց...





# ՁՅՈՒՆԸ

*ԱՐՏԱՇԵՍ ՑԱՎՐՅԱՆ*

Օրը ցրտեց, ջուրը սառավ,
Ձյունը ծածկեց աշխարհն արար,
Հազար գույնից զրկեց նրան,
Ճերմակ թիկնոց ձգեց վրան,
Ինքն իրենով խիստ հիացած՝
Հպարտ-հպարտ մտքում ասաց.
— Չէ՛, շա՛տ բան է ուժս պատում,
Ինչո՞ւ չիշխեմ ըմբոստ մարդուն...—
Բարձրացրեց բուք ու բորան,
Մարդ ու ճամփա աչքից կորան:
Մինչ ձյունն այսպես կհոխորտար,
Զարթնեց գարնան արևը վառ,
Նրան արագ հալեց, մաշեց,
Առու-առու ձորը քաշեց:
Վերջում միայն թողեց մի բուռ,
Հանեց լեռան գագաթը սուր,
Որ լավ տեսնի երկնի որդին
Վախճանն իր պես պարծենկոտի:

— Դու, պա՛պ, հենց այդ տանն ես ծնվել, չէ՞:

— Հա՜... Մենակ ե՞ս... Այդ գյուղում, այդ տանն են ծնվել, ապրել ու մահացել իմ հայրը, իմ հոր հայրը... Իմ պապը, իմ պապի պապը, իմ պապի պապի պապը... Բոլորը:

— Իսկ ինչո՞ւ իմ հայրը և ես ուրիշ տեղ ենք ծնվել:

— Կմեծանաս, կիմանաս: Գնանք, որ շուտ հասնենք:

Կեսօրից առաջ Արամե պապն ու Վրեժը հասան գետահովիտ: Այստեղ սահմանապահները նրանց կանգնեցրեցին:

— Ովքե՞ր եք, ո՞ւր եք գնում:

— Ովքե՞ր ենք... Ես Արամեն եմ, սա էլ երրորդ դասարանցի իմ թոռ Վրեժն է, քաղաքից ենք գալիս...

— Անցաթուղթ ունե՞ք... Սա սահման է, առանց անցաթղթի չի կարելի,— բացատրեց սահմանապահը:

— Անցաթուղթ չունենք,— ասաց Արամե պապը,— ուղղակի եկել ենք հատուկ գործով:

— Ի՞նչ գործով, կարելի՞ է իմանալ,— հարցրեց սահմանապահը:

— Նկարելու գործով... Թոռնիկս նկարելու է իմ ծննդավայրը: Դպրոցում նկարների ցուցահանդես է լինելու, և նա ուզում է ներկայացնել իր պապի ծննդավայրը:

— Իսկ ո՞րն է, պապի՛կ, ձեր ծննդավայրը,— ժպտալով հարցրեց սահմանապահ զինվորը:

— Ա՛յ այն գյուղը, գետի մյուս ափին,— ասաց Արամե պապը,— մի քիչ որ մոտենանք, ավելի հարմար կլինի նկարելու համար:

— Չի կարելի,— ասաց սահմանապահը, ապա մի պահ լռելով, շարունակեց.— Եկեք ձեզ տանեմ պետի մոտ, գուցե նա թույլ կտա:

Սահմանապահի ետևն ընկած, Արամե պապն ու Վրեժը գնացին պետի մոտ: Սահմանապահը զեկուցեց, որ մոտիկ քաղաքից այստեղ են եկել մի ծերուկ և մի պատանի՝ պապ և թոռ, առանց համապատասխան անցաթղթերի...

— Նրանք մրսած են, ասացե՛ք, որ թեյ բերեն,— կարգադրեց պետը, ապա դարձավ Արամե պապին.— Այս ձմռան ցրտին ի՞նչ նպատակով եք եկել այս կողմերը:

— Նկարելու... Դպրոցում նկարչական ցուցահանդես է լինելու, թոռնիկս թե՝ մեր դասարանցիներից մեկը նկարել է իր պապի ծննդավայրը, ես էլ ուզում եմ նկարել, պա՛պ, քո ծննդավայրը... Ես էլ խոստացա, հիմի եկել ենք, որ նկարի:

— Ահա թե ի՛նչ,— ծիծաղեց պետը,— բայց չէ՞ որ սա սահմանային գոտի է, հատուկ անցաթուղթ է պետք: Բայց ոչինչ, քանի որ եկել եք, բացառության կարգով թույլ կտամ... Ա՛յ չարաճճի, բա կարելի՞ է պապիկին այս ձմռան ցրտին տնից դուրս հանել: Դե լավ, նախ թեյ խմենք, հետո ձեզ կուղեկցեն գետի

*ափ, այնտեղից գյուղը պարզ երևում է:*

*Թեյելուց հետո, սահմանապահ զինվորի ուղեկցությամբ պապ ու թոռ հասան գետափ: Վրեժը բացեց ներկերի արկղը, փորձեց վրձինները և սկսեց նկարել: Արամե պապը մի քանի քայլ առաջ գնաց, կանգնեց ծյուների մեջ՝ հայացքը գյուղին: Նրա ուսերը դողում էին կեսօրի արևի տակ: Վրեժը տարված նկարում էր և ոչինչ չնկատեց, ոչինչ չհասկացավ, միայն վերջում, երբ գյուղի բոլոր տները նկարել էր, ձայն տվեց պապին.*

*— Պա՛պ, ո՞րն է մեր տունը....*

*— Այն ավերակը, քարերի կույտը, ձյան տակ...*

*— Ես այդպես չեմ նկարի:*

*Եվ Վրեժը ավերակի տեղում նկարեց գյուղի մյուս տների նման մի տուն՝ իր պապերի տունը, որի հողե տափակ կտուրից ծուխը քուլա-քուլա ելնում էր երկինք:*

*Երեկոյան Արամե պապն ու Վրեժը վերադարձան տուն՝ իրենց հետ բերելով Բերդիկ գյուղի նկարը: Տնեցիները հավաքվեցին սեղանին դրված նկարի շուրջը, և Արամե պապը մատը մեկ առ մեկ պարզելով գյուղի տներին, ասաց.*

*— Սա Սողոմոնի տունն էր, սա՝ Առաքելի... Սա Համբարձումի տունն էր, սա՝ Մուրադի... Սա մեր տունն էր...*

*— Իսկ ճամփա՞ն... Ինչպե՞ս են գյուղ գնում... Գյուղի ճամփա՞ն...— հարցրեց փոքրիկ Աստղիկը:*

*— Ճամփան ձյան տակ է,— պատասխանեց Վրեժը,— գարնանը երբ ձյունը հալվի, ճամփան կերևա:*

*— Նկարի մեջ գարնանը ձյունը կհալվի՞... Չի հալվի,— հոնքերը կիտելով ասաց Աստղիկը:*

*— Ճիշտ է, լավ կլինի մի ճամփա էլ նկարես,— ասաց մայրիկը:*

*Եվ բոլորը համաձայն եղան.*

*— Ճամփա՛...*

*— Ճամփա՛...*

*Վրեժը նկարի ձյուների մեջ մի ճամփա նկարեց, ճամփի վրա՝ Արամե պապին և իրեն:*

*Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ*



# ԾՆՈՂԱԿԱՆ

*ՖԵՆԻՔՍ ՍԱՐԴԱՐՅԱՆ*













**Առավոտյան ձյուն էր եկել: Կեսօրը ոտնահետքեր էր թողել ձյան վրա: Մայրիկի հետ դպրոց էի գնում մտախոհ շրջանցելով ոտնահետքերը, որպեսզի զգամ ձյան ճռճռոցը:**

**Փոշոտ ու ջարդված ապակիներով մեր դասարանում վաղուց սկսվել էր ծնողական ժողովը: Դռան բանալու անցքից երևաց միայն դասարանի կեսը: Առջևի նստարանին մոր հետ նստել է Գոհարը: Նա միայն «չորսեր» և «հինգեր» ունի՝ ինչպես ես առաջ: Իսկ հիմա ես շատ «երեքներ» ունեմ. այդ պարզվեց ինձ համար էլ անսպասելիորեն: Կեսօրին, երբ տուն էինք գնում, ես մտածում էի չարաբաստիկ «երեքների», ծնողական ժողովի մասին. ես մխիթարանքի կարիք ունեի: Հարկավոր էր մեկը, որ ասեր՝ ոչինչ, մյուս քառորդում «երեքներդ» կուղղես, իսկ հիմա մայրիկդ կտեսնի, որ շատերն են վատ սովորում և չի բարկանա: Գոհարն իմ ամենամտերիմ ընկերուհին է: Բայց տան ճանապարհին նա անընդհատ խոսում էր գարնան ու իր նոր գարնանային կոշիկների մասին:**

**Երկրորդ նստարանին նստել է Սոսը: Եղունգով խազեր է քաշում նստարանին: Նրա հայրը լուրջ է ու խոժոռ, կարծես պատմական մեծ իրադարձություն է տեղի ունենում և իր ներկայությունը շատ կարևոր դեր է խաղում այստեղ: Մայրիկս չի երևում. նա երևի նստել է ինչ-որ տեղ՝ վերջում, գուցե և պատի տակ: Ընկեր Ավագյանը ետ ու առաջ է քայլում: Ես մտածում եմ, թե ինչու այդպես ստացվեց: Պարզապես սկսեցի վատ սովորել, ուրիշ ոչինչ: Նույնիսկ հիմա, երբ ներսում ծնողական ժողով է, ես դարձյալ չեմ կարողանում գտնել, թե ով է մեղավորը:**

**— Քնարի՛կ:**

# ԺՈՂՈՎ

Հանկարծակիի եկած շրջվում եմ:

— Ի՞նչ է ասում:

Իմ կողքին՝ միջանցքի պատուհանի մոտ կանգնած է Ալվարդը:

— Չեմ կարողանում լսել,— ասում եմ ես:

Իսկ ականջիս դեռ հնչում է «Քնարիկ»: Երեկ նա առաջին անգամ արտասանեց իմ անունը: Դարձյալ փակում եմ աջ աչքս, ձախը մոտեցնում եմ բանալու անցքին: Մեջտեղի շարքի երկրորդ նստարանին Վաչիկի տատը աչքերը կիսախուփ ննջում է:

— Ոչինչ չե՞ս լսում:

Ես նորից շրջվում եմ ու նորից զարմանում:

— Դու դասերից չես փախել,— ասում եմ Ալվարդին,— չես խանգարել, ինչի՞ց ես վախենում:

Ու մի տեսակ կարծես նույնիսկ նախանձում եմ նրան: Ախր ես երբեք չեմ կարողանա այդպիսին լինել՝ սուսիկ-փուսիկ: Մեր դասարանում Ալվարդի գոյությունը ոչ ոք չի զգում, իսկ ինձ հետ բոլորը հաշվի են նստում, և միայն դրա համար արժե, որ ամեն ինչ մնա անփոփոխ:

— Տնարարությունս «երկուս» է,— ասում է Ալվարդը,— գոգնոց չեմ կարել, դրա համար:

— Մեծ բա՛ն է,— ասում եմ ես:

Նա կարծես վիրավորվում է, որ ես այդ մեծ բան չեմ համարում: Ներսում նստարանները ճռնչում են, շունչս պահում եմ: Թերթիկներն են բաժանում: «Հիմա կվերջանա»,— շշնջում եմ ես: Վախից ձայնս կտրվել է: Երկուսիս էլ համակում է սարսափը: Նստարանները ավելի ուժեղ են ճռնչում: Բացվում ու փակվում են նրանց փեղկերը:

— Վախենո՞ւմ ես,— հարցնում է Ալվարդը:

# ՄԱՅՐԻԿԻ ՕՐՈՐԸ

ԳՐԻԳՈՐ ԵՂԻԿՅԱՆ



Քուն է իջել ծառ ու ծաղկին,
Խաղաղվել է ամեն տուն,
Քուն է մտել ծիտը ճյուղին,
Դո՛ւ էլ, բալի՛կ, մտիր քուն:

Լռություն է արդեն դրսում,
Մութն է պատել դաշտ ու ձոր,
Առվակներն են միայն հոսում,
Երգեր ասում մեղմօրոր:

Քնի՛ր, մանկի՛կ իմ սիրասուն,
Քունդ անուշ թող լինի,
Տեսած բանը քո երազում
Զամիչ ու նուշ թող լինի:

Նկ. ՆԱԶԵԼԻ ՆԻԿՈՂՈՍՅԱՆԻ

— Ըհը՛:

Ու զարմանում եմ, որ խոստովանեցի: Ուր որ է, դասարանից դուրս կգան: Ես ետ եմ ցատկում, կանգնում եմ Ալվարդի կողքին՝ միջանցքի պատուհանի մոտ: Այդպես կողք-կողքի մենք դիմավորելու ենք մեզ համար սարսափելի մի պահ:

Նախ դասղեկն է դուրս գալիս: Նրա դեմքը կարմրել է, քայլում է վստահ ու գոհ, կարծես ճակատամարտ է շահել: Թերթիկը ճռճելով՝ դուրս է գալիս Ցոլիկի մայրը:

— Ընկե՛ր Ավագյան, ախր ինչպե՞ս կլինի,— հետո շրջվում է դեպի Ցոլիկը.— գնտինը մըտնես՝ ավելի լավ է:

Ծատախոս Ցոլիկը սսկվել է: Վաչիկը տատի թևից է բռնել:

— Գնանք, տա՛տ ջան:

Խաչիկն ու հայրը դանդաղ են քայլում: Զգացվում է, որ հայրը նրա վրա չի բարկանում, չնայած տղան «երեքներով» սովորող է: Անցնում է Նազիկը մի անծանոթ կնոջ հետ: Ժպտալով անցնում են Գոհարն ու մայրը: Գոհարը ոչինչ չի ասում:

— Ինչո՞ւ ներսում չէիր,— հարցնում է նրա մայրը:

Եվ առանց պատասխանի ըսպասելու, թևանցուկ տանում է Արփիկի մորը: Գոհարն այնպես է ժպտում, որ պարզ է, չի էլ մտածում իմ մասին: Եվ ընդհանրապես ես նկատում եմ, որ իմ գոյությունը ոչ ոք կարծես չի ըզգում: Այն էլ հիմա, երբ հարկավոր է ինձ սիրտ տալ: Դասարանում, երբ ես սրամտում եմ՝ բոլորը հրճվում են, երբ ուզում են դասից փախչել և չեկողներ են լինում, ասում են՝ «Քնարի՛կ, քե՛զ տեսնենք, բե՛ր դրանց»: Իսկ հիմա կարծես ես չկամ, կարծես միջանցքում պատուհանի մոտ ուղղակի դատարկ տարածություն է: Ահա և Ալվարդի հայրը: Ալվարդը պինդ սեղմում է ձեռքս և փոքր քայլերով, վախվորած մոտենում է հորը: Ա՛յ թե հսկա հայր ունի նա: Մայրիկը գալիս է ամենից վերջում և բերում է «երեքներով» լի իմ թերթիկը: Նա քայլում է մենակ: Ոչ ոքի չի նայում: Ես սարսափելի խղճում եմ նրան: Ես մոտենում եմ նրան, ճիշտ ծեծված շան պես: Այդ համեմատությունը ամենից ավելի է զբաղեցնում ինձ: Մայրիկն էլ ինձ չի նկատում: Կարծես, ուր որ է, լաց է լինելու: Ես նայում եմ շուրջս: Գոնե մեկնումեկը ինձ նայի: Երբ դասը խանգարում եմ, բոլորը նայում են իմ կողմը, իսկ հիմա ոչ մեկի պետքը չէ, որ ես «երեքներ» ունեմ: Միայն Ալվարդն է ժպտում ինձ: Շարունակ շրջվում ու ժպտում է, երևի սըրտապնդելու համար: Եվ այս երկար, հուզումնալից, սարսափելի օրվա ընթացքում ես ապրում եմ իմ հայտնագործության ուրախությունը: Ալվարդը լավ աղջիկ է:



# ՎԱՅՐԻ ՁԻ

ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ

*Կար ժամանակ, երբ մեր դաշտավայրերում ու տափաստաններում արածում էին վայրի ձիերի և էշերի երամակներ:*

*Հայաստանում տարածված վայրի ձիու մասին այժմ կա միայն երկու փաստ: Լենինականի մսի կոմբինատից ոչ հեռու գտնվող ավազահանքերում երկրաբան Լ. Ա. Ավագյանը հայտնաբերել և ուսումնասիրել է հնադարյան ձիու ներքին ծնոտ և վերջավորությունների բազմաթիվ մնացորդներ: «Ստենոնյան» էր կոչվում այդ ձին, որը աշխարհում ձիերի հնագույն տեսակին էր պատկանում:*

*Այդ ձին եղել է շատ մարմնեղ և չափազանց խոշոր ատամներ է ունեցել, որ այժմ պահվում են Երևանի երկրաբանական թանգարանում:*

*Հնագետների հաշվով Շիրակի դաշտում Ստենոնյան ձին ապրել է չորրորդական շրջանի առաջին կեսում, սրանից շուրջ կես միլիոն տարի առաջ:*

*Երկաթուղու շինարարության ժամանակ, անցյալ դարի վերջերին հնագույն ձիերից մեկի մնացորդներն էլ հայտնաբերվել են Նալբանդ կայարանի մոտ:*

*Ինչ վերաբերում է վայրի էշերին, այստեղ մենք պեղումներին դիմելու կարիք չունենք, որովհետև այդ կենդանիներից դեռևս հարյուր տարի առաջ կային Ախուրյանի և Արաքսի ափերին: Նրանց մասին հիշատակություններ կան հայ պատմիչների մոտ, սակայն դրանք մեջ բերելուց առաջ նկարագրենք այդ գեղեցիկ ու գողտրիկ կենդանուն:*

*Միտումնավոր կերպով գեղեցիկ ենք անվանում վայրի էշին, որովհետև նրա ընտանի ցեղակիցները իրենց բեռան տակ դարերի ընթացքում կորցրել են իրենց վայելչագեղությունը և այժմ ընտանի կենդանիների մեջ ամենից անշուքն են և ամենից արհամարհվածը:*

*Բայց կար ժամանակ, երբ նրանց նախնիները՝ ջեյրանի նման բարակասրունք, եղնիկի նման գեղանի վզով, կլոր գավակով, ողորկ ու փայլուն մազով կենդանիներ էին, որ սլանում էին արաբական նժույգներից ոչ պակա... արագությամբ ու թեթև թռիչքներով և հայ իշխանների սիրած որսն էին հանդիսանում:*

*Այդ կենդանիներից այժմ կա Միջին Ասիայի տափաստաններում՝ Թուրքմենստանում և Բադխաշ լճից հարավ, ինչպես և Մոնղոլիայում ու հյուսիսարևմտյան Չինաստանում:*

*Եվ քանի որ վայրի էշը ևս ուրիշ շատ կենդանիների հետ միասին Միջին Ասիայից է մուտք գործել Հայաստան, ուստի մեզ մոտ տարածված տեսակը պետք է որ արտաքինով ու սովորություններով շատ*

---

## Ե Ր Գ Ի Ծ Ա Կ Ա Ն

*(ՆՄՈՒՇՆԵՐ ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ*

### ԾՈՐԱԿԻ ՎՐԱ ԶԱՅՐԱՑԱԾ ԳԻՆՈՍԸ



**Գյուղի կանայք ջրի հերթի էին կանգնած ծորակի մոտ: Ծորակը փակված էր փայտե խցանով: Ինչ անում էին խցանը դուրս չէր գալիս: Կանչում են Գինոսին: Սա գալիս է և աշխատում է հանել խցանը, բայց չի կարողանում: Հանկարծ ջրի ուժից խցանը ինքն իրեն դուրս է թռչում և դիպչում ուղիղ Գինոսի ճակատին: Զայրացած Գինոսն ասում է. «Տե՞ղը չի քեզ, որ բերանդ փակում են»:**

### ԹԱԳԱՎՈՐՆ ՈՒ ԵՐԳԻՉԸ



**Մի երգիչ թագավորին շատ ուրախացնում է իր երգերով: Թագավորը խոստանում է նրան հետևյալ օրը հազար ոսկի տալ: Երգիչն անսահման ուրախանում է: Հետևյալ օրը նա ներկայանում է հազար ոսկին ստանալու: Թագավորն ասում է. «Ի՞նչ ոսկի, ի՞նչ բան, երեկ երեկոյան մի բան դու ասիր՝ ես ուրախացա, մի բան էլ ես ասի՝ դու ուրախացար, էլ մեր մեջ հաշիվ չմնաց»:**

# ԵՎ ՎԱՅՐԻ ԷՇ



*տարբեր չլինի Թուրքմենստանում այժմ տարածված տեսակից:*

*Դա բավական կարճ ականջներով, դեղնագորշ մազով, բարեկազմ կենդանի է, որ ապրում է միայն տափաստաններում և դրանց հարակից բլուրներում: Այդ կենդանին մարդկանց հիացնում է իր վազքով: Ճանապարհորդ Հեյը գրում է. «Վայրի էշերը, որոնց մենք հետապնդում էինք տափաստանում, սուրում էին հովիտներով ու բլուրներով, կարծես գրգռելով մեզ իրենց արագաշարժությամբ և անխոնջությամբ: Ոչ մի հեծյալ չի կարող հասնել նրանց»:*

*Սխալվում է հարգելի անգլիացին. հին դարերում արևելքում հռչակված հայկական նժույգները հասնում էին նրանց: Այդ մասին՝ քիչ հետո: Իսկ առայժմ պիտի ասեմ, որ Արարատյան դաշտը, որ այն ժամանակ ուներ ընդարձակ ու անմարդաբնակ տափաստաններ, շատ հաճելի վայր է եղել այդ կենդանու համար: Առատ բուսականությունը, ջրերը, կից ձորակների մեղմ ու արևոտ լանջերը ձմռան ամիսներին, հարթ ավազուտները,— այդ բոլորը այն է, ինչ հարկավոր է վայրի էշի համար:*

*Եվ զարմանալի չէ, որ մինչև բնակավայրերի ու ազգաբնակության խտացումը, վայրի էշեր կային թե՛ Արաքսի հովտում, թե՛ Ախուրյանի ափերին:*

*Բերեմ այն ամենը, ինչ այդ մասին կա մեր պատմիչների մոտ:*

*Մովսես Խորենացին հինգերորդ դարում գրում էր, որ Արտաշեսի որդի Արտավազդը «քիչ օրեր թագավորելուց հետո մի անգամ անցնում էր Արտաշատ քաղաքի կամուրջով՝ Գինա ակունքների մոտ կինճեր (վարազներ) և վայրի էշեր որսալու: Հանկարծ ինչ-որ ցնորքից շփոթվում, խելագարվում է: Ձիուց վայր է ընկնում մի խոր փոսի մեջ և այնտեղ խորասուզվում անհետանում է»:*

*Այսպիսով, հաստատ է, որ մեզնից երկու հազար տարի առաջ ևս Արարատյան դաշտում տարածված էին վայրի էշերը:*

*Խորենացուց մենք իմանում ենք նույնպես, որ Երվանդ թագավորը Ախուրյան գետի հյուսիսային կողմում անտառ է գցում, պարիսպներով պատում և ներսում բազմացնում նաև վայրի էշեր:*

*Պարսից Հազկերտ թագավորը իր Շապուհ որդուն նշանակում է Հայաստանի թագավոր: «Բայց նա (Շապուհը) չկարողացավ (հայ) նախարարների համակրությունը շահել, այլ բոլորը նրան ատեցին և թագավորաբար չէին մեծարում որսի կամ խաղերի ժամանակ:*

# Մ Ա Ն Ր Ա Պ Ա Տ Ո Ւ Մ Ն Ե Ր

*ԲԱՆԱՀՅՈՒՍՈՒԹՅՈՒՆԻՑ)*

## ՓՈՔՐ ԵՐԵԽԱՆ ՈՒ ՀԱՅՐԸ



Թույլ չէին տալիս, որ փոքր տղան մեծերի հետ սեղան նստի:

— Բա ե՞րբ եմ ձեզ հետ սեղան նստելու,— հարցնում է մի անգամ փոքրիկը:

— Երբ բեղերդ բուսնեն,— կատակով ասում է մայրը:

Մի անգամ էլ նա սովորականի պես ճաշում էր առանձին, երբ սուսիկ-փուսիկ նրան մոտեցավ իրենց կատուն:

— Գնա՛, փիսիկ, մեծերի՛ հետ կեր, դու արդեն բեղեր ունես:

## Ո՞Ւ՞Ր Է ՋՈՒԿԸ ԿԱՄ Ո՞ՒՐ Է ԿԱՏՈՒՆ




Ամուսինը մի լիտրանոց ձուկ է գնում շուկայից և բերում է տուն: Կինը եփում և մենակ ուտում է: Երբ երեկոյան ամուսինը տուն է գալիս, ասում է. «Բե՛ր ձուկը՝ ուտենք»: Կինն ասում է. «Կատուն կերավ»: Ամուսինը բռնում և կշռում է կատվին, որ ճագիվ էր մի լիտր քաշում: Դառնալով սրտախոս կնոջը, նա ասում է. «Սա կատուն է, բա ձուկն ո՞ւր է, իսկ եթե ձուկն է, բա ո՞ւր է կատուն...»

*Նկ. ՍԱՐՈ ԿԱԼԵՆՑԻ*

Մի անգամ դեպք եղավ հանդգնաբար արշավելու ցիռերի երամակների հետևից խորդուբորդ և քարքարոտ տեղերով: Շապուհն սկսեց ետ մնալ: Առոմ Մոկացին պարսավանքով ասաց նրան. «Գնա, գնա, պարսից աստվածորդի, եթե տղամարդ ես»: Իսկ նա ասաց. «Դու գնա, քարքարուտների մեջ արշավը դևերի գործն է» (Մ. Խորենացի):

Այստեղ հետաքրքրականը ոչ միայն վայրի էշերի (ցիռերի) երամակների գոյությունն է Արարատյան դաշտում, այլև այն, որ հայ իշխանները, լինելով վարպետ որսորդներ, ունեցել են արագավազ ու դիմացկուն երիվարներ: Նույն բանի մասին՝ և՛ հայ հեծյալների վարպետության, և՛ վայրի էշերի գոյության մասին՝ սքանչելի նկարագրություն ենք գտնում մենք Ղ. Փարպեցու (հինգերորդ դար) մոտ. «Որսի է ելել նախարարների գունդը ազատների որդիների հետ, ուր ոմանք ցիռերի և այծյամների հետևից արշավելով խոսում են խիզախ աղեղների ձայնով...»— գրում է նա:

Յոթերորդ դարի մեծ գիտնական Անանիա Շիրակացու կազմած թվաբանական խնդիրների գրքից իմանում ենք հետևյալը:

Շիրակի և Արշարունիքի տեր Ներսեհ Կամսարականը շուրջկալ է կազմակերպում Արթիկի լեռան ստորոտում: Եվ մեկ գիշերվա ընթացքում հայտնվում են վայրի էշերի բազմաթիվ երամակներ: Չկարողանալով նրանց ձեռք բերել, որսորդները գնում են Թալին գյուղը և իրենց տեսածի մասին պատմում են Կամսարականին: Սա տեղ հասնելով, իր եղբայրների և ազատանու հետ միասին սկսում է որսը: Եվ նրանց կես մասը բռնվում է թակարդներով, և մեկ քառորդ մասը սպանվում է նետերով, և մատղաշներին բռնում են կենդանի վիճակում, և դա կազմում էր 12-րդ մասը, և սպանվածների թիվն էր 360: Իմացիր, ընդամենը քանի՞ երե (վայրի կենդանի) կար: Պատասխան՝ 2160:

Դժվար չէ նկատել, որ Շիրակացու մեջբերածը ոչ այնքան թվաբանություն է, որքան պատմություն: Ավելի շուտ, այս խնդիրը, որ իր ժամանակի համար թվաբանական էր, այժմ կարելի է դիտել, որպես պատմական արժեքավոր տեղեկանք մի կենդանու մասին, որն այժմ հազվագյուտ է ՍՍՀՄ-ում: Անկասկած, Շիրակացին կյանքից է վերցրել այս խնդիրը: Եթե այն ժամանակ Արթիկի և Թալինի շրջաններում վայրի էշեր չլինեին, Շիրակացին նման օրինակ չէր բերի: Այդպիսով, այդ կենդանիները 7-րդ դարում կա եղել են Արագածի հարավային լանջերին և այն էլ՝ շատ մեծ քանակությամբ: Եթե նույնիսկ Շիրակացին իր խնդիրը շատ ուռճացած թվերով կազմած լինի, այնուամենայնիվ մնում է այն համոզումը, որ այն ժամանակ այդ վայրերում արածելիս են եղել ցիռերի բազմաթիվ երամակներ, որոնց ձմեռային արոտավայրը պետք է որ լինեին Ախուրյանի, Արաքսի մեղմաշունչ ձորերը և մերձակա դաշտերը:

Թովմա Արծրունին (10-րդ դար) նույնպես վկայում է, որ Արաքսի հովտում կան «զգուշավոր ցիռերի երամակներ»: Իսկ Ղ. Ալիշանը իր «Այրարատում» գրում է. «Չի կարելի այստեղ սրանց հետ չհիշատակել մեր նախնիներից ավանդված երկու մեծ որսերն էլ՝ կինճը և վայրի էշը»:

Պատմական Ուրծի լեռնաշղթայի հյուսիսային լանջի քարայրներից մեկի մեջ մեր գիտնականները գտել են «կենդանիների գերեզմանոց», ուր կովկասյան ազնիվ եղջերվի, փոքրասիական լեռնային ոչխարի և ուրիշ շատ կենդանիների ոսկորների հետ միասին գտնվել է նաև վայրի էշի մնացորդներ: Այդ ոսկորները պատկանում են այն կենդանիներին, որոնք ապրում էին մոտավորապես ներկա դարաշրջանի սկզբներին: Դա նշանակում է, որ այն հեռավոր ժամանակներում վայրի էշերի երամակներ կային ոչ միայն Արաքսի հովտի տափաստաններում, այլև այդ հովիտը ձախ կողմից եզերող մաշված, չոր և բուսականությամբ աղքատ բլուրներում ու սարերում, որոնք այժմ քարայծի և հայկական մուֆլոնի հայրենիքն են հանդիսանում:

Այդ սքանչելի կենդանիները ժամանակի ընթացքում հետզհետե ոչնչացան և իսպառ վերացան մոտավորապես 11—12-րդ դարերում:



Մոնղոլական վայրի ձի

# ԲՈՒՅՍԵՐ, ՈՐՈՆՔ ՊԱՏԿԱՌԱՆՔ ՈՒ ՍԱՐՍԱՓ ԵՆ ՆԵՐՇՆՉՈՒՄ

*ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ* *(Կենսաբանական գիտությունների դոկտոր)*

Վաղնջական հնում շփվելով բնության զանազան երևույթների հետ և չկարողանալով տալ դրանց ճիշտ բացատրությունը, մարդը ամենուրեք տեսնում էր գերբնական ուժերի առկայությունը, ակնածանք տածում քամու, կայծակի, անձրևի ու կարկուտի նկատմամբ։ Նրա վրա ահավոր տպավորություն էին թողնում հորդառատ գետերը, մթին քարանձավները, բարձրաբերձ լեռները և անդնդախոր կիրճերը, դրանք ահ ու սարսափ էին ներշնչում նրան, ծնում զանազան առասպելներ, վերջ ի վերջո դառնալով կույր պաշտամունքի առարկա։

Մարդու վրա ուժեղ ներգործություն էր ունենում նաև կենդանի բնությունը՝ անտառը, մարգագետինը, տափաստանը, անապատը, ճահիճները, իրենց բազմաթիվ ու բազմազան կենդանական աշխարհով։

Անտառը միշտ մարդուն ակնածանք է ներշնչել, թվացել է խորհրդավոր։ Նախնադարյան ժամանակներում մարդը անտառում ապաստան է գտել, կեր, վառելիք հայթայթել։ Այնուհետև աստիճանաբար առաջացել է անտառի ու ծառերի պաշտամունքը։ Հին Հայաստանում սրբազան էին համարվում ո՛չ միայն անտառը ընդհանրապես, այլև մի շարք ծառատեսակներ, որոնք երկյուղ կամ ակնածանք էին ներշնչում իրենց տեսքով ու էությամբ։ Սրբազան ծառեր էին համարվում սոսին, կաղնին, բարդին և այլն։

Իջևանի շրջանի Ն. Աղդան գյուղի մոտ կա մի զառամյալ կաղնի։ Պատմաբանները ենթադրում են, որ դա տնկել է հռչակավոր զորավար Վարդան Մամիկոնյանը՝ 1500 տարի առաջ։ Դժվար է ասել, թե դա որքանո՞վ է համապատասխանում իրականությանը, այնուամենայնիվ այդ ծառը դարեր շարունակ պաշտամունքի առարկա է հանդիսացել։ Այժմ էլ ժողովրդական տոնախմբությունների ժամանակ նրա շուրջը բազմաթիվ ուխտավորներ են հավաքվում։ Նախկին կրոնական ծիսակատարությունները վերածվել են երգի ու պարի, խնջույքների և ուրախության։ Չնայած նման տոնախմբություններից մեկի ժամանակ ծառը խիստ վնասվեց՝ այրվեց նրա կենտրոնական բնի և ճյուղերի մի մասը, այնուամենայնիվ նահապետ-կաղնին այսօր էլ պատկառազդու տեսք ունի հզոր բնի, վիշապանման ճյուղերի և անսովոր կերպով գետնի մակերես դուրս եկած հաստ ու ոլորուն արմատների շնորհիվ։ Դարավոր արմատներն ու ճյուղերը գրեթե չեն տարբերվում իրարից։ Թվում է, թե ծառի որոշ ճյուղեր ցած կռանալով՝ խրվել են հողի մեջ և շարունակում են աճել գետնի տակ։ Ծառի տակից մի հորդառատ, սառնորակ աղբյուր է բխում, լրացնելով ծառի հեքիաթային կերպարը։ Հնադարյան սոսու ծառեր կան Մեղրու շրջկենտրոնում։ Դրանց տարիքը անցնում է 500—600 տարուց։ Այդ ծառերը բազմաթիվ պատմական իրադարձությունների վկա են եղել։ Պատմում են, որ այստեղ, ծառերի ստվերի տակ, ժողով է հրավիրել տաղանդավոր զորավար Մխիթար սպարապետը։ Ծառերից մեկի բունը այնքան խոշոր է, որ նրա մեծ փչակը մի ժամանակ մսավաճառի կրպակ էին դարձրել։

Նման ծառեր պատմական Հայաստանում շատ են եղել և ներկայումս էլ հաճախ են հանդիպում։ Ինչպես նկարագրում է Ղևոնդ Ալիշանը, Երևանում եղել է մի հսկայական սոսու ծառ, որը իր մեծությամբ չի զիջել Զմյուռնիայի Բոյուկ-Տերե վայրում գտնվող հզոր սոսու ծառին, որը ներկայումս էլ համաշխարհային հռչակ է վայելում։



*Սրբազան ծառի պաշտամունքը*
*(Հայկական մանրանկար)*

Նման ծառերի հազարամյա տարիքը, ֆանտաստիկ սաղարթի անսովոր չափերը, նրանց հետ կապված առասպելներն ու իրական պատմությունները պատկառանք ու ակնածանք էին ներշնչում մարդկանց, ստիպելով պաշտամունքի առարկա դարձնել դրանց։

Մարդիկ հատկապես շատ են վախեցել խիստ թունավոր ծառերից։ Բնության մեջ և հատկա-

պես արևադարձային երկրներում հազարավոր նման ծառեր կան։ Դրանց մասին երբեմն հորինվել են անհավանական ու ֆանտաստիկ պատմություններ, վերագրել գերբնական ուժ ու կախարդական զորություն։ Սակայն հետագայում մարդը մի կողմ դնելով երկյուղը, սովորեց օգտվել այդ թույներից, քանի որ ինչպես հայտնի է, յուրաքանչյուր թույն միաժամանակ բուժիչ միջոց է այս կամ այն հիվանդության համար։

Կան ծառեր, որոնց նկատմամբ պետք է ծայրահեղորեն զգույշ լինել։ Օրինակ, բիրմայական լաքի ծառը (մելանորեա ուզիտատա) երկրագնդի այն հազվագյուտ բույսերի թվին է պատկանում, որոնք ահավոր սարսափ են ազդում բնիկների վրա։ Բանը նրանումն է, որ այս ծառատեսակի ծաղկափոշին և հեշտությամբ ցնդող հյութը անտառահատների մոտ առաջացնում են խիստ ցավ պատճառող ցան, ջերմության բարձրացումով, որը հաճախ ավարտվում է թունավորված մահով։



Նուկլեա լեկույենտա կոչվող սրբազան ծառի ճյուղը՝ ծաղիկներով։

Արևադարձային մի շարք ծառատեսակներ դաղում են, ավելի ցավոտ ու վտանգավոր են, քան եղինջի անմեղ խայթոցը։ Ծառանման եղինջը կամ գիգանտ լապորթեյա գիգասը Քվինսլենդի խոնավ անտառներում բնիկների ահն ու սարսափն է դարձել։ Երբ մեկը պատահաբար դիպչում է այս բույսի երիտասարդ տերևներին ու ընձյուղներին, ապա կայծքարի բյուրեղներ կրող հատուկ գեղձային մազիկները ծակելով մաշկը և այնտեղ մրջնաթթու լցնելով, այնպիսի այրվածք են առաջացնում, որ ահավոր, մի քանի օր տևող վայրի ցավերը կարող են խելագարության հասցնել մարդուն։ Այդ է պատճառը, որ բնիկները ժանտախտի պես վախենում են այս ահավոր ծառերից։ Դոկտոր Բեյլին այս ծառը լուսանկարելիս զգուշանում էր այնպես, ինչպես շառաչող օձից։

Սակայն էլ ավելի ուժեղ է խայթում լապորթեյայի ավստրալիական մի այլ տեսակը։ Ինչպես հավաստացնում է պրոֆ. Սուլիտը, դրա խայթոցից ցավերը կարող են տևել մի քանի ամիս։ Հետաքրքիրն այն է, որ ձիերը նման խայթոցը խիստ ծանր են տանում այն ժամանակ, երբ խոշոր եղջերավոր անասունները դրա նկատմամբ անտարբեր են և խայթոցից չեն վնասվում։

Հարավային Ռոդեզիայում աճում է մի ծառ, որը տեղացիների լեզվով կոչվում է «անանուն» (շթեբերա մազոնենզիզ)։ Տեղացիներին արգելված է տալ այդ ծառի անունը, խոսել դրա մասին և կամ մանավանդ՝ ցույց տալ ուրիշներին։ Այդ ծառը սրբազան է համարվում, քանի որ դրա սաղարթի տակ ցեղի նոր առաջնորդն է օծվում, ընդունելով իր իշխանության ատրիբուտները։

Արևմտյան Աֆրիկայում իշխում է այն համոզմունքը, թե ով կոլա ծառի տնկիներ աճեցնի, ապա նա կմեռնի, երբ այդ ծառը հասունանա, առաջին անգամ ծաղկի։ Այդ սնահավատությունը խոր արմատներ է գցել բնիկների մեջ և նրանք զարհուրանք են տածում այդ միանգամայն անվնաս ծառատեսակի նկատմամբ։

Պերուում է աճում ժակարթիա դիգիթաթա թունավոր ծառը, որին տեղացիները վերագրում են ամենազարհուրելի, հրեշավոր հատկություններ։ Նրանք վախենում են նույնիսկ քնել այդ ծառի տակ, մահացու է համարվում։

Իսկ մեզ մոտ վտանգավոր է համարվում ընկուզենու տակ քնելը։ Ժողովրդի մեջ տարածված է այն համոզմունքը, թե իբրև դա կարող է մահացու հետևանքներ ունենալ։ Իրականությունն այն է, որ մի շարք բույսեր (շուշան, օլեանդր, ընկուզենի) ընդունակ են անջատելու որոշ ցնդող նյութեր, որոնք կարող են թեթևակի թունավորման երևույթներ առաջացնել (գլխացավ, շշմածություն, գլխապտույտ և այլն)։ Ընկուզենու ստվերում քնելու դեպքում նման երևույթներ հաճախ են նկատվում։

Պաշտամունքի հասնող հատուկ հարգանքի են արժանացել մի շարք արևելյան բույսեր՝ այդ թվում փյունիկյան արմավենին և լիբանանյան մայրին։ Փյունիկյան արմավենին ասորեստանցիների և փյունիկեցիների մոտ «կյանքի ծառ» էր համարվում։ Որպես սրբազան ծառ, պատկերված է բազմաթիվ բարձրաքանդակներում, նախշերում, փորագրություններում և այլն։ Այդ ծառի պաշտամունքը ընդունված է եղել նաև հին Հայաստանում, ուրարտական ժամանակաշրջանում։

# ԿԵՆԴԱՆԻՆԵՐԻ ՀԵՌԱՋԳԱՅՈՒԹՅԱՆ ԱՌԵՂԾՎԱԾԸ

Ա. ՍԱՆԴԵՐՍՈՆ

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

*Մեր փոքրիկ առագաստանավը խարիսխ ձգեց Հոնդուրասի ափին (Կենտրոնական Ամերիկա)։ Հրաշալի եղանակ էր։ Սակայն առավոտյան երկինքն ամպեց և օդը հեղձուցիչ դարձավ։*

*Ես հաճախ եմ առիթ ունեցել հանդիպելու բնության արտառոց երևույթների։ Բայց այդ օրվա տեսածս աննախադեպ էր։ Խեցգետինները ասես խելքները թռցրել էին։ Բոլոր արուները, վիթխարի աջ չանչերը առաջ պարզած, անհանգիստ պտտվում էին բների շուրջը։ Հետո սկսեցին ջրով լցված բներից փորել հանել էգերին և առաջներն արած՝ քշել։ Ապա արուները սեղմ շարք կազմեցին գետափին, մեկեն շուռ եկան ցամաքի կողմը։ Ամեն մի ալիքի կամ նույնիսկ ծփանքի հետ նրանք շարժվում էին ետ ու առաջ։ Դա շարունակվեց մոտ մեկ ժամ, ապա, ասես հրամանով, ամբողջ շարքը շարժվեց դեպի ցամաքի խորքը՝ քշելով տանելով խեցգետինների անկազմակերպ ամբոխին։ Մի քանի րոպե անց, բազմահոծ բանակը անհետացավ մանգրենու թփուտներում։ Մենք զգույշ քայլում էինք նրանց ետևից, մինչև որ մթնեց։*

*Երեկոյան ժամը 10-ին նավապետը վերադարձավ ու հայտնեց, թե ծովափը ծայրեծայր ալեկոծվում է փոթորկից։ Մենք գետահունով անհապաղ վերև շարժվեցինք։ Կեսգիշերից հետո նորից հանդիպեցինք մեր խեցգետիններին. նրանք դեռ շարունակում էին ծովից հեռանալ, բայց հիմա արդեն անթիվ-անհամար էին։ Գետինը ծածկված էր խեցգետիններով։ Մենք անցանք նրանցից ու խարիսխ ձգեցինք մանգրենու թավուտում։*

*Առավոտյան խեցգետինները հասան մեզ, իսկ ցերեկվա ժամը 4-ին փոթորիկը վրա պրծավ իր ողջ մոլեգնությամբ ու ողողեց ափերը։*

*Բայց ինչպե՞ս էին խեցգետինները մեկ օր առաջ իմացել, որ փոթորիկ է լինելու և իրենք ցամաքով մինչև ուր պետք է հեռանան։*

*Սովորաբար դա պատճառաբանում են հետևյալ կերպ. այս խեցգետինները խիստ զգայուն են ծովի*

---

Մեզ են հասել «սրբազան ծառի» պաշտամունքի բազմաթիվ պատկերներ։ Այդ ծառը պատկերված է սիմետրիկ ճյուղավորությամբ, դեպի վեր թեքված պտուղներով։

Լիբանանյան մայրին դեռ անհիշելի վաղ ժամանակներից ի վեր սրբազան բույս է համարվել։ Այդ հսկայական ու գեղեցիկ ծառը միշտ էլ մեծ տպավորություն է գործել մարդկանց վրա։ Ներկայումս լիբանանյան մայրին պետության կողմից հատուկ պահպանության տակ է վերցված, քանի որ զբոսաշրջիկների անվերջ այցելությունները խանգարում են այդ արժեքավոր ծառի վերաճին ու բազմացմանը։ Եթե լիբանանյան մայրին պատշաճ ձևով չպաշտպանվի, ապա շուտով կանհետանա երկրագնդի երեսից։

Հին Եգիպտոսում պաշտամունքի առարկա է եղել լոտոսը։ Ֆրանսիայում սրբազան ծաղիկ է հանդիսացել շուշանը, որը թագավորական խորհրդանիշ է համարվել։ Ճապոնական պետական զինանշանը քրիզանթեմն է։

Ամերիկյան հնդիկների համար սրբազան ծառ է հանդիսացել կալիֆոռնիական հոչակավոր սեքվոյան՝ աշխարհի ամենախոշոր և երկարակյաց ծառը։ Գիգանտ սեքվոյան հսկայական տպավորություն է թողնում դիտողների վրա։ Մարդիկ կարող են ժամերով հմայված դիտել այդ վիթխարի ծառերը, որոնց բարձրությունը հասնում է 150 մետրի, իսկ բնի շրջագիծը անցնում է 20—25 մետրից։ Պրոֆ. Կրոնգվիստը նշում է, որ գիգանտ սեքվոյան մարդու վրա թողնում է այնպիսի անջնջելի տպավորություն, ինչպես Նիագարայի ջրվեժը կամ Արարատ լեռը։

Հնդկաստանում սրբազան են հանդիսանում ֆիկուս ռելիգիոզա (բանյան) և կրաթևա ռելիգիոզա ծառերը։ Եթե չլիներ հռչակավոր գանկգոյի պաշտամունքը Հին Չինաստանում և Ճապոնիայում, ապա 350 միլիոն տարվա պատմություն ունեցող այդ ծառատեսակը չէր հասնի մինչև մեր օրերը։

Խորհրդավոր ծառերը երկյուղ են ներշնչում մարդկանց, քանի դեռ մարդը չի պարզել դրանց գաղտնիքները։ Սակայն գիտությունը աստիճանաբար բացահայտում է այդ ծառերի կենսաբանական առանձնահատկությունները և ուղիներ որոնում դրանցից զանազան արժեքավոր նյութեր ստանալու համար։ Նույնիսկ ծառերի մահաբեր թույներն էլ այսօր հաջողությամբ օգտագործվում են բժշկության և ժողովրդական տնտեսության այլ բնագավառներում։ Այս ծառերը, որոնք նախկինում ահ ու սարսափ էին տարածում ամենուրեք, ներկայումս դարձել են մեր լավ բարեկամները։



մակերևույթի անսովոր տատանումների նկատմամբ, որոնք մեզ համար անընկալելի են: Սակայն հնարավոր է, որ այդ խեցգետինները, ինչպես և այլ կենդանիներ, օժտված լինեն ինչ-որ հատուկ զգայարանով կամ օդի բարոմետրիկ ճնշումը չափող «մեխանիզմներով», որոնք ուժգին փոփոխություն են կրում, երբ մոտենում է փոթորիկը:

Այն, որ կենդանիները կարող են օժտված լինել նման ունակությամբ, այժմ անհնար է հերքել: Վերջին երկու հարյուրամյակում հայտնաբերվել են զգայարանների ամենատարբեր օրգաններ, կենդանի օրգանիզմով մեկ սփռված «չափիչ գործիքներ», որոնց գոյության մասին անցյալում ոչ ոքի մտքով չէր անցնում: Բայց ինչպե՞ս են գործում այդ «մեխանիզմները»: Առայժմ շատ բան մութ է և առեղծվածային: Խնդիրը բարդանում է նրանով, որ պնդում ենք, թե գոյություն ունեն միայն հինգ զգայարաններ: Այդ դեպքում շատ զգացումներ մնում են անբացատրելի: Մարդն ինքն էլ օժտված է առավել շատ ընկալման միջոցներով, քան կարծում ենք:

Մի անգամ հետաքրքրվել են աղավնիների և այլ թռչունների այն ունակությամբ, որ նրանց տուն է հասցնում հազարավոր կիլոմետրեր հեռուներից: Այն, որ փոստատար աղավնին կարող է վերադարձի ուղին գտնել, նույնիսկ եթե նրան տանեն փակ կոնտեյներով, դա ոչ ոք չի ժխտում: Բայց ինչպե՞ս է դա նրան հաջողվում:

Թռչուններին հետևել են ինքնաթիռներից: Նկատել են, որ աղավնիները թռչում են հետզհետե լայնացող սպիրալի ձևով, մինչև որ գտնում են ցանկալի ուղղությունը: Բայց և այնպես նրանց «նավարկության մեթոդիկան» մինչև այժմ անհասկանալի է: Արվել են ամենատարբեր ենթադրություններ: Փորձել են, օրինակ, բացատրել այդ բոլորը Կորիոլիսի ուժով, որը հյուսիսային կիսագնդում դեպի արևմուտք է շեղում հյուսիսից հարավ շարժվող ամեն մի մարմին: Այդ ուժը պայմանավորված է մեր մոլորակի պտույտով. ենթադրել են, թե աղավնիները օժտված



են ինչ-որ «մեխանիզմով», որը նրանց թույլ է տալիս զգալու մագնիսական դաշտի ուժագծերը, որոնք ընդգրկում են ողջ երկրագունդը: Բայց առայժմ ոչ ոք չի կարողացել դա ապացուցել գործնականում: Կատարել են այսպիսի մի փորձ. աղավնու թևին ամրացրել են փոքրիկ մագնիս, որը պետք է հակազդեր Երկրի մագնիսական դաշտին: Բայց թռչունները թե՛ մեկ, թե՛ երկու մագնիսով գտել են տան ճամփան ոչ ավելի վատ, քան առանց դրանց: Հետագա փորձերը ցույց տվեցին, որ աղավնիները, խեցգետինների մի քանի տեսակների նման, կողմնորոշվում են, օգտվելով արևի լույսի բևեռացումից: Արդյոք ա՞յդ «մեթոդն» են կիրառում նաև մյուս կենդանիները, դա դեռևս չգիտենք: Այնուամենայնիվ պարզ է, որ ճայերը, հավալուսները և մի քանի այլ թռչուններ, ինչպես և փղերը, չղջիկները, տասնոտանի խեցգետինները օժտված են բնազդային «նավարկման սիստեմով»:

Իսկ սեզոնային չվերթի՞ խնդիրը: Չէ՞ որ ոչ միայն հասուն թռչունները, այլև դրանց ձագերը ի-



րենց կյանքի առաջին տարում կարողանում են կողմնորոշվել և գտնել տուն տանող երկար ու երկար ճանապարհը: Բևեռային ծովածիծառները, օրինակ, անցնում են Երկրի շրջագծից էլ երկար մի ճանապարհ: Հասկանալի կլիներ, եթե թռչունները չուն կատարեին միայն ցերեկվա լույսով: Իսկ ինչպե՞ս բացատրել, որ աղավնիներն ու տասնոտանի խեցգետինները կողմնորոշվում են նաև բևեռային մթության մեջ:

Ամերիկացի պրոֆեսոր Տ. Ուոտերմանին հաջողվել է ապացուցել, որ սրապոչները, էվոլյուցիոն սանդուղքին ոչ այնքան բարձր կանգնած կենդանիներ լինելով հանդերձ, կարողանում են արևի դիրքը որոշել նույնիսկ այն ժամանակ, երբ այն չի երևում, որոշել ըստ լույսի բևեռացման աստիճանի կամ անկյան, որի տակ տատանվում է լույսը երկնքում:

Կենդանիների այդ հանելուկային ունակությունների ուսումնասիրումը կօգնի ստեղծելու նոր մեթոդ՝ բևեռային գիշերվա պայմաններում նավերի կողմնորոշման համար: Չէ՞ որ սովորական մագնիսային կողմնացույցը այդ շրջաններում համարյա անզոր է: Արևը գտնվում է հորիզոնից ներքև, իսկ աստղերը չեն տարբերակվում: Սրապոչը օգտվում է արևի լույսի բևեռացումից արդեն հարյուր միլիոնավոր տարիներ, այնինչ մենք այս հատկության հետ ծանոթացել ենք միայն անցյալ դարում:

Համեմատաբար վերջերս պարզվեց, որ սպեկտրի տեսանելի մասը, այսինքն՝ լույսը, տարածվում է ինչպես սպեկտրի մանուշակագույն, այնպես էլ կարմիր շերտից այն կողմ: Մարդը այդ ճառագայթները չի տեսնում: Իսկ շատ կենդանիներ կարողանում են ընկալել դրանք և օգտվել այդ առավելությունից:

Մի շարք օձեր գլխի երկու կողմերում և աչքերի վերևում ունեն փոսիկներ: Դրանց մեջ տեղավորված են նրբազգայուն օրգաններ, որոնք գերազանց ընկալում են ինֆրակարմիր, կամ ջերմային ճառագայթումները: Օձը որս անելիս այդ օրգաններից օգտըվում է ինչպես լոկատորներից, որոնք անսխալ ցույց են տալիս, թե որտեղ է գտնվում ամենափոքրիկ որսն անգամ:

Բվերը, որոնք սնվում են մանր տաքարյուն կենդանիներով, իրենց զոհերին գտնում են նույնիսկ գիշերվա լիակատար խավարում և հաճախ՝ խիտ ու բարձր խոտերի մեջ, օգտվելով նույն այդ սկզբունքից, բայց փոքր-ինչ այլ միջոցներով: Ինչպես հաստատել են Վ. Հոկինգը և Բ. Միտչելը, բվերի աչքերը այնքան զգայուն են ինֆրակարմիր ճառագայթների նկատմամբ, որ դրա շնորհիվ նրանք կարողանում են տեսնել ջերմ մարմնի յուրաքանչյուր շարժումը, ինչպես վառ բիծը՝ սառը ֆոնի վրա:



Եվ այսպես, եղանակի կանխազգացումը թռչունների մոտ հիմնված է նույն այն գործոնների վրա, ինչով պայմանավորված է օձի կամ բվի վարքը որսի պահին: Բայց մինչև կպարզվի, թե ինչպես է դա նրանց հաջողվում, նրանց վարքը ժամանակավորապես կթվա անըմբռնելի ու գերբնական:

Հապա ջրածիծա՞ռը: Այդ թռչունը ձմեռում է Հարավային Աֆրիկայում, իսկ բնակվում է սովորաբար Հյուսիսային Եվրոպայում: Այնտեղ .անց է կացնում գարունն ու ամառը: Ծիծառը սնվում է բացառապես միջատներով, որոնց որսում է թռիչքի պահին: Հետաքրքիր դիտողություններ են կատարել ջրածիծառի վրա ֆինն թռչնաբանները: Նրանք նկատել են, որ ծիծառը իրեն տարօրինակ է պահում Հյուսիսային Ատլանտիկայից եկող ցիկլոնների մոտենալու ժամանակ: Նրանք բոլորը լքում են այն վայրերը, որոնց սպառնում է փոթորիկը, և թռչում են հարյուրավոր մղոն հեռու այն վայրերից, որտեղ եղանակը նրանց թևավոր սննդին անպայման ստիպելու է ցածրանալ: Դա դեռ ոչինչ: Նրանց փոքրիկ, դեռևս անօգնական ձագուկները, որոնց անպաշտպան վիճակում լքում են մեծահասակները, անզգայանում են: Ծնողների առկայությամբ երբեք նման բան չի պատահում, նույնիսկ եթե նրանց մենակ են թողնում երկար ժամանակով: Այսպես, անփորձ ձագուկներն էլ զգում են փոթորկի մոտենալը:

Ինչպե՞ս է այդ թռչուններին հաջողվում մի քանի օր առաջ իմանալ փոթորկի վտանգը, խուսափել տարերքի մոլեգնությունից և սովամահությունից: Դա դեռ անհայտ է մեզ:



Շատ թռչուններ, ի թիվս դրանց՝ նաև թռչելու անընդունակ պինգվինները, ամեն տարի հավաքվում են միևնույն տեղերում, որպեսզի ձու դնեն և ձագ հանեն: Մի անգամ ինձ վիճակվեց Կարիբյան ծովի մի փոքրիկ կղզյակում տեսնել, թե ինչպես մեկ-երկու օրում այնտեղ լցվեցին բազմահազար օլուշներ, որոնք գալիս էին մոտիկ ու հեռու երկրներից: Երբ մենք ափ դուրս եկանք, այնտեղ մի քանիսն էին միայն, իսկ երբ անցավ երեք օր, նավապետը մեզ ցույց տվեց արևելքում հորիզոնը ծածկած մի մառախուղ: Հեռադիտակով նայեցինք, տեսանք, որ դրանք թռչունների ամպեր են: Կես ժամ անց, նրանց առաջապահը կղզի հասավ: Թռչունները աղմուկով նստում էին ժայռերին և իսկույնևեթ սկսում կովըշտուքը տեղի համար: Ամբողջ օրը նրանք տառացիորեն թափվում էին երկնքից: Հաջորդ առավոտյան կղզու վրա ուղղակի ոտք դնելու տեղ չկար, իսկ երամները էլի ու էլի գալիս էին: Այդ ի՞նչ ազդանշան էր, որի համաձայն հազարավոր թռչուններ Կարիբյան ծովի հեռավոր ափերից, գուցե և Ատլանտիկայի լայնություններից, մի պոռթկումով թռել եկել էին այս խղճուկ, նեղլիկ կղզին: Զգացմունքի այդ ի՞նչ օրգան էր օգնել նրանց՝ ընկալելու այդ ազդանշանը: Այժմ գիտնականները այն կարծիքին են, թե այս գործելակերպի մղիչը ոչ այլ տեղ է քան հենց իրենց թռչունների օրգանիզմում և որ դա կապված է սեզոնին հատուկ բնակալելու ձգտման հետ: Բայց ինչպե՞ս են թռչունները այդքան «ճշգրիտ հաշվարկում», որ բոլորը կղզի հասնեն գործնականորեն միևնույն ժամանակ, թեև չվերթի են ելնում տասնյակ, հարյուրավոր, ոմանք նույնիսկ հազարավոր մղոն հեռուներից: Այդ բոլորը դեռևս անբացատրելի են:



Ինձ թվում է, ամբողջ դժվարությունը նրանում է, որ ժամանակակից տեխնիկան չի կարողանում որսալ կենդանիների այդ հանելուկային ունակությունները դրսևորող «սարքերի» ազդանշանները, իսկ երբ հասնի դրան, մարդու համար ոչ միայն ըմբռնելի կդառնան բնության այդ գաղտնիքները, այլև նա դրանք կօգտագործի՝ որպես բիոնիկայի ընձեռած հնարավորություններ:

# Ա Ղ Ա Վ Ն Ի Ն Ե Ր

Ա. ԲՈԼՈՏՈՎ



Գեղեցիկ են ռուսական փոստային աղավնիները, հեռավոր թռիչքների մեջ՝ անմրցակից: Երբեմն որոշ թռչուններ հաղթահարում են ժամում հարյուր կիլոմետր: Լավ վարժեցված աղավնին օրական կարող է թռչել հազար կիլոմետր և, որ ամենակարևորն է, չի շփոթվի, չի շեղվի ճանապարհից: Այդ հիանալի ունակությունների պատճառով են նրանց փոստատարներ դարձրել:

Նամակատար աղավնիները շատ էին տարածված Ռուսաստանում՝ Մոսկվա-Պետերբուրգ, Կիև-Օդեսա և այլ երթուղիներով փետրավորները ժամանակին տեղ էին հասցնում փոստը:

Այժմ շատ տարածված են դեկորատիվ աղավնիները՝ օդում գլուխկոնծի տվողները, թմբկահարները, ժապավենավորները, զտարյուն վարշավյանները, կուրսկյան փնջատոտքավորները: Կուրսկյան աղավնիների թաթերի վրա փետուրներ են աճում և որքան երկար են, այնքան թանկ են գնահատվում: «Կրնգուղավոր վանականների» գլուխը և պոչը սև է, իսկ «խաչակիր վանականների» գլխից և պոչից բացի, սև են նաև թևերի ծայրերը: Ռժևսկյան զտարյունները երկար, բարակ քթով են, ծխագույն թևերով: «Չինական որորները» մանրիկ են, ծխագույն, փետուրները կուրծքը երկու մասի բաժանելով՝ ուղղված են տարբեր կողմեր: Որորների տարատեսակները շատ են, կան և զուտ սևեր, և զուտ կարմիրներ ու դեղիններ: Առանձնապես պետք է նշել Օմսկում, Նովոսիբիրսկում և Սիբիրի այլ քաղաքներում բուծված աղավնիները՝ զուտ կարմիր, յասամանագույն, զուտ սև, սպիտակ: Այդ աղավնիները շատ փոքր չափերի են, գլուխները՝ կիսակլոր, կարճ ու հաստ, փոքր-ինչ կեռ կտուցով: Գլխի փետուրները բացվում են վարդի նման, վզի շուրջը փետուրները ուղղված են տարբեր կողմեր և թվում է վարդը շրջապատված է տերևներով:

Յակոբինյան տեսակի աղավնիները միջին մեծության են: Նրանց հայրենիքը Հնդկաստանն է: Լինում են սպիտակ, կողքերին կարմիր փետուրներ, և լրիվ կարմիր գույնի:

Ռոստովյան կարմիրները և այդտեղի մյուս աղավնիները տարբերվում են իրենց արտաքին տեսքով: Փոքրիկ կլոր գլուխը ետ է ձգված, կուրծքը ցցուն է, պոչը՝ փափլիկ, վեր ցցված, այնպես որ երբեմն պոչն ու գլուխը հավասար են, թևերը ցած են ուղղված և կիսով չափ երկար են մարմնից: Այդ աղավնիները թռչում են արտույտի նման վեր ու վար անելով, երբեմն օդում կախված են մնում մի քանի ժամ: Նրանք մի առանձնահատկություն էլ ունեն. մի մասը կարողանում է նստել պոչին և հանգիստ վայրէջք կատարել, իսկ մյուսները պոչով ցատկոտում են: Մի քանիսը կատարում են 16—20 ցատկ, որը շատ է գնահատվում աղավնիների սիրահարների կողմից: «Փքված» տեսակի աղավնին խոշոր է, 40—50 սմ հասակով, ունի մեծ քուջ, որը նման է օդապարիկի և լցված է օդով:

Գերմանական ցուցադրական աղավնիները կարմիր են, սպիտակ, շիկավուն, յասամանագույն, դեղին: Ունեն մեծ գլուխ, լայն ամուր կտուց, փոքր-ինչ կռացած են և քայլվածքով ու հայացքով նման են արծվի: Նրանց թռիչքը ծանր է, նրանք հաճույքով չեն թռչում:

Ահա թե որքան մեծ ընտրություն կարող են կատարել աղավնու սիրահարները: Եվ նրանց դաստիարակությունը շատ դժվարին է, հազաաշատ:

Փետրավորների բնակարանը պետք է չոր և մաքուր լինի, այն հարկավոր է շուտ-շուտ օդափոխել, միաժամանակ հարկավոր է խուսափել միջանցիկ քամուց: Աղավնատան ելքը պետք է լինի փոքր, փակվող դռնով, ներսում հատուկ բներ են պատրաստ-





վում, որտեղ յուրաքանչյուր զույգ ձու է դնում: Խմելու ջրի համար կարելի է օգտագործել ծաղկամանը, լիտրանոց ապակյա տապան, ափսեներ: Կերակրելու համար պատրաստում են տարբեր հարմարանքներ: Ամենապարզը փաներայից պատրաստված կերակրամանն է: Աղավնիները ուտում են վարսակ, ցորեն, եգիպտացորեն, ոլոռ, ոսպ, կանեփ: Շատ կարևոր է իմանալ, թե տարվա որ եղանակին որ աղավնուն ինչով է հարկավոր կերակրել: Փոստային աղավնիներին, օրինակ, թռիչքի ժամանակ հարկավոր է տալ ոսպի, կանեփի խառնուրդ, մնացած ժամանակ՝ կորեկ և կանեփ: Աղավնիները կերածը մարսելու համար մանր քարերի և ավազի կարիք ունեն: Աղյուսը մանրում են և լցնում կերի մոտ: Աղավնին կուլ է տալիս այդ քարերը, նրա քուջում քարերը մնում են մի ամբողջ տարի:

Այսպիսով դուք պատրաստել եք բույնը, ունեք աղավնիներ, նրանք ձագեր են հանել, ձագերը թռչել են սովորել: Նրանք սկսում են վարժվել իրենց տանիքին: Շատ կարևոր է, որ երամը միատարր լինի՝ չլինեն թույլ թռչուններ: Եթե թռչուններից մեկը հակույն հոգնում է և նստում տանիքին, նրան պետք է անջատել երամից և առանձին վարժեցնել: Դրա համար այդպիսի աղավնուն պետք է տնից հեռու տանել և թողնել, որպեսզի նա տուն վերադառնա: Աղավնիներին երկարատև թռիչքի վարժեցնելու համար ձողի վրա կախում են կարմիր կտոր և պահում այնքան, որքան հարկավոր է: Վայրէջք կատարելու նշանը լինում է կտորը ցած իջեցնելը:

Աղավնի պահելը մեծ բավականություն է, միայն թե ոչ բոլոր բակերում կարելի է աղավնի պահել: Հիշեցեք, որ դրա համար անհրաժեշտ է տնային կառավարչությունների թույլտվությունը և մեծահասակների օգնությունը:

# ԱՅՍՏԵՂ ՈՉ ՈՔ ՉԻ ՊԱՐՏՎՈՒՄ

Արտաքուստ սովորական այս շենքում տեղավորված է փառաբանված բռնցքամարտիկ Վլադիմիր Ենգիբարյանի ղեկավարած պատանի բռնցքամարտիկների դպրոցը: Այդ սովորական շենքը, սակայն, շատ ու շատ տղաների է գերում, հրապուրում, իր գիրկն առնում:

Մի պահ երկմտանքի մեջ կանգ եմ առնում դռան առջև, ապա վճռականորեն ներս մըտնում:

— Կանգնի՛ր,— ձայնում է մեկը, երբ աստիճաններով իջնում եմ մարզասրահ: Ես ակամա կանգ եմ առնում և սպասում այդ տիրական ձայնի հետագա հրահանգներին:— Ապրե՛ք: Ձեզանից գոհ եմ...

Պարզվում է, որ ինձ չեն էլ նկատել: Պարզապես այստեղ բռնցքամարտի վարժական պարապմունքներ են: Մոտենում եմ ռինգին, որտեղից դուրս են գալիս երկու քրտնած տղաներ, թաքցրած ուրախություն կա նրանց աչքերում. համենայն դեպս հաճելի է գովեստի խոսքեր լսելը...

Իսկ ռինգում արդեն ուրիշ երկու տղա իրար ձեռք են սեղմում:

— Բոքս,— մարզիչ Տիգրան Գոհարյանի հրահանգով սկսվում է հաջորդ մենամարտը: Ես կողքանց նայում եմ մարզիչին: Նա հայացքը չի կտրում սաներից և ժամանակ առ ժամանակ խորհուրդներ է տալիս:

— Միավորներ են անհրաժեշտ: Հաճախակի հարվածներ կատարեք... Ավելի՛ դիպուկ... Լա՛վ է:

Հարևան սենյակում առաստաղից պարաններով կաշվե պարկեր են կախված: Տղաները «պայքարի» մեջ են մտել դրանց հետ: Պարկերը ճոճվում են ուժգին հարվածներից, իսկ պատանի բռնցքամարտիկների մեջ յուրաքանչյուր հարվածի հետ ուժ է կուտակվում, զարգանում է տեխնիկան, արագությունը:

Մի այլ խումբ մարզադահլիճում ազատ վարժություններ է կատարում:

Եվ այսպես ամեն օր:

— Դպրոցը հիմնադրվել է 1959 թվին,— պատմում է ուսմասվար Աշոտ Պողոսյանը:— Մինչև հիմա դպրոցն ավարտել են մոտ 1000 պատանիներ: Ներկայումս ունենք 52 խումբ, իսկ 40 խմբեր էլ գործում են դպրոցի մասնաճյուղերում, որոնք

Լուսանկար՝ ԶԱՎԵՆ ԲՇՏԻԿՅԱՆԻ



գտնվում են հանրապետության տարբեր շրջաններում: Պատրաստվում ենք մասնաճյուղեր ստեղծել նաև Հայաստանի մյուս բոլոր շրջաններում, որպեսզի ընդունակ և բռնցքամարտ սիրող երեխաները հնարավորություն ունենան հենց տեղում զբաղվել սիրած մարզաձևով:

— Իսկ ծնողները թո՞ւյլ են տալիս, որ իրենց տղաներն զբաղվեն բռնցքամարտով,— հարցնում եմ ես:

— Իհարկե,— նա ժպտում է:— Այդ վաղուց էր, որ շատ ծնողներ բռնցքամարտի մեջ միայն անմիտ ծեծկռտոց էին տեսնում: Հիմա ավելի հաճախ հենց ծնողներն են բերում իրենց երեխաներին: Միայն թե մեր հնարավորությունները քիչ են, չենք կարողանում ընդգրկել բոլոր ցանկացողներին...

Լավ աշխատանքը լավ արդյունքներ է տալիս: Այդ հանրահայտ ճշմարտությունը մի անգամ ևս ապացուցում են ենգիբարյանականների հաջողությունները.

— Երրորդ տեղ՝ Կրասնոդարում և Մոսկվայում անցկացված սպորտ-դպրոցների ՍՍՀՄ առաջնությունում:

Երիտասարդ բռնցքամարտիկների ՍՍՀՄ առաջնությունում, որը անց է կացվել Գորկիում, դըպրոցի սաներ Հ. Հովհաննիսյանն ու Հ. Զորոյանը գրավել են երկրորդ տեղը...

Զրուցելով տղաների հետ, ես իմանում եմ, որ այստեղ չեն հանդուրժում «վատ» գնահատականը. «Լավ բռնցքամարտիկը պետք է նաև լավ սովորի»: Այս միջոցառումն օգնում է բարձրացնել ուսման առաջադիմությունը հանրակրթական դպրոցներում. չէ՞ որ ոչ ոք չի ցանկանում հրաժարվել սպորտի իր նախընտրած ձևից...

Մոսկվայում անցկացված ՍՍՀՄ առաջնության հաղթող, «Լավագույն տեխնիկայի համար» մրցանակի արժանացած Վաչագան Մաղաթյանը մինչև կավարտեր մարզումները, ես լսեցի մարզիչ Հենրիկ Մելքոնյանին.

— Ինչ խոսք, որ ես շատ ուրախ եմ Վաչիկի հաղթանակի համար,— ասում է նա:— Սակայն ինձ ավելի շատ ուրախություն է պատճառում այն, որ նա հաղթանակից հետո շարունակում է մարզվել ավելի մեծ եռանդով: Ես հավատացած եմ, որ նրա աշխատասիրությունը նրան ավելի շատ բանի կհասցնի:

— Բռնցքամարտն ինձ շատ է օգնում,— երբ վերջապես սկըսում ենք զրուցել, ասում է Վաչիկը:— Մարզումների շնորհիվ ձեռք եմ բերում կամք, տոկունություն, արագ ռեակցիա...

Այնուհետև նա պատմում է ընկերների մասին: Մի քանի խոսք էլ իր ծրագրերի մասին է ասում և խորամանկ ժպտում մարզիչին: Նրանք երկուսով գաղտնիք ունեն, որ ես չփորձեցի պարզել: Երևի մի օր Վաչիկն ինքը կբացի իր գաղտնիքը մեծ ռինգի ճանապարհին:

ՀԱՅԿ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

# ԱՐՏԱԴՊՐՈՑԱԿԱՆ ՀԻՄՆԱՐԿՆԵՐԻ ՍՏՈՒԳԱՏԵՍ

Այս տարի հունվարին լրացավ կոմերիտմիությունը և պիոներական կազմակերպությունը Վ. Ի. Լենինի անվամբ կոչելու 50 տարին: Ի պատիվ այդ նշանավոր տարելիցի ՀամԿԽ, ՀամԼԿԵՄ Կենտկոմը, ՍՍՀՄ լուսավորության մինիստրությունը, ճանապարհների հաղորդակցության մինիստրությունը, ՍՍՀՄ ԺՏՆՑ, ՀԱՄԽ, ՀԼԿԵՄ Կենտկոմը, ՀՍՍՀ լուսավորության մինիստրությունը, ՀՍՍՀ ԺՏՆՑ որոշել են 1973 թվականի օգոստոսից մինչև 1974 թվականի օգոստոսը անցկացնել արտադպրոցական հիմնարկների աշխատանքների հանրապետական ստուգատես:

ՍՏՈՒԳԱՏԵՍԻ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ

Բարձրացնել արտադպրոցական հիմնարկներում կազմակերպչական-զանգվածային, խմբակային ու ակումբային աշխատանքների մակարդակը:

Արտաուսումնական ժամերին մանուկների հետ տարվող բոլոր տեսակի աշխատանքների հետագա բարելավումը: Արտադպրոցական հիմնարկների ստեղծագործական կոլեկտիվների դերի ուժեղացում սովորողների գաղափարա-քաղաքական և բարոյական դաստիարակության գործում:

Արտադպրոցական հիմնարկների մասնակցությունը տոների, ստուգատեսների, հավաքների, փառատոների, մրցույթների, օլիմպիադաների և այլ զանգվածային միջոցառումների կազմակերպման ու անցկացման գործում:

Ստուգատեսին մասնակցում են հանրապետության պիոներների և դպրոցականների պալատները, պատանի տեխնիկների, պատանի բնասերների կայաններ, մանկական երկաթուղին և այլ արտադպրոցական հիմնարկները:

Հանրապետական ստուգատեսի արդյունքները ամփոփվելու են 1974 թվականի հոկտեմբերի սկըզբին, ըստ արտադպրոցական հիմնարկի առանձնահատկության:

Ստուգատեսի հաղթող արտադպրոցական հիմնարկների կոլեկտիվները կպարգևատրվեն դիպլոմներով, պատվոգրերով, մեդալներով և հավելյալ վարձատրությամբ:

# ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ

ԱՐԱՄ ԿԻՐԱԿՈՍՅԱՆ

Գլուխ ունի,
Չի մտածում,
Ու գլխին են
Միշտ հարվածում:

Ձմռանը լռում է,
Ամռանը գոռում է:

Կեսը՝ օդում,
Կեսը՝ ջրում,
Հողմն է նրան
Առաջ հրում:

Երկու փոքրիկ նկարիչ
Քեզ հետ աշխարհ են գալիս,
Առանց թղթի ու ներկի
Քեզ աշխարհն են ցույց տալիս:

Աղմկում է նա
Ինչպես ջրաղաց
Ու պատրաստում է
Ձեզ քաղցր բաղարջ:

Ետ է գնում,
Առաջ գալիս,
Ժամփորձներին
Ժամից տալիս:

# ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ԽԱՉԲԱՌ




1. Հեղափոխական երգ։ 2. Հայ երգչուհի, ՍՍՀՄ ժողովրդական արտիստուհի։ 3. Հայտնի գուսան։ 4. Կոմիտասի ստեղծագործություններից։ 5. Լարային գործիք։ 6. Հայ հանճարեղ երգահան և խմբավար։ 7. «Արշակ II» օպերայի հեղինակը։ 8. Հայկական բալետ։ 9. «Ես իմ անուշ Հայաստանի» երգի հեղինակը։ 10. Ռուս հռչակավոր երգիչ։ 11. Երաժշտական ստեղծագործություն։

Հորիզոնական վանդակները ճիշտ լրացնելուց հետո՝ ուղղահայաց շարքերից մեկում կկարդաք հայ մեծ երգահանի ազգանունը։

Առաջարկ՝ ՎԱՉԵ ԳԱՍՊԱՐՅԱՆԻ




Լույս է տեսնում 1928 թվականից:

ՊԻՈՆԵՐ

№ 2 փետրվար 1974 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝
Նկ. ԱՐԵՎՇԱՏ ԱՎԱԳՅԱՆԻ




«Пионер» на армянском языке. Орган ЦК ЛКСМ Армении и республиканского совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375200, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.



Հասցեն՝ 375200, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15։

Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96։



ՎՖ 04080, Պատվեր՝ 1644: Տպաքանակ՝ 80300: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 8/II 1974 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ: Երևան—9, Տերյան փ. № 91:

